# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## ՈՒՂՂԵՑԵՔ, ԱՊԱ ԿԱՐԴԱՑԵՔ

| Եջ | սյուն | տող | տպված է | պետք է լինի |
|---|---|---|---|---|
| 2 | 2 | 20 վեր. | Պիոներական | «Պիոներական |
| 2 | 2 | 13 ներք. | աշխատանքի | մյուս աշխատանքների |
| 3 | 1 | 7 վեր. | Այսպես | Այնպես |
| 4 | 2 | 8 վեր. | վրա | վրայի |
| 6 | 1 | 19 ներք. | քշեցին | քաշեցին |
| 7 | 2 | 2 ներք. | բացված | թացված |
| 9 | 1 | 3 վեր. | հայենի | հայրենի |
| 12 | 2 | 18 վեր. | իրագրծվում | իրագործվում |
| 13 | 1 | 19 վեր. | կերցաղը | կենցաղը |

Չորրորդ տարի

Բանվորական գործի պայքարում-պիոնե՛ր պատրաստ:

# ՊԻՈՆԵՐ

ՊԱՏԱՆԵԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐ

ՕՐԳԱՆ ՀԼԿՅԵՄ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԲՅՈՒՐՈՅԻ

Խմբագրության հասցեն—Յերևան, Աբովյան փ. № 36

№ 1—2 (5—6) ՀՈՒՆՎԱՐ—ՓԵՏՐՎԱՐ 1926 թ.

## ԸՆԿԵՐ ԳՈՒՄԵԴԻՆԸ ՊԻՈՆԵՐՆԵՐԻՆ

Սիրելի ընկերներ, ՀԼԿՅԵՄ չորրորդ համագումարը մեծ նշանակություն ունի և ձեր կազմակերպության համար։ Համագումարը հայտարարեց, վոր սրանից հետո, ավելի մեծ ուշադրություն պիտի դարձնել պիոներների ղեկավարման գործին։

Լենինյան կոմյերիտմիությունը մեծ ու դժվարին գործ է կատարում, նա իր վրա յե վերցրել ձեր, ոմմունիստական որ սերնդի դաստիարակության գործը։



Այդ գործում, սիրելի պիոներներ, դուք էլ անելիքներ ունեք։ Ձեր ուսումնասիրության առարկան պիտի դարձնեք կոմյերիտմիության կյանքն ու աշխատանքները, վորպեսզի կարողանաք ապագայում լավ կոմյերիտականներ լինել։ Լենինյան հին սերնդից և կոմյերիտմիությունից պիտի սովորեք աշխատավորության գործի համար աշխատելն ու պայքարելը։ Պիոներական կազմակերպության առաջ խոշոր խնդիրներ են կանգնած։ Մինչև որս դեռ չենք կարողացել ամուր շաղկապել դպրոցի և կոլեկտիվի աշխատանքները։ Յեթե այդ կապը չլինի, լավ չի, կը տուժի թե դպրոցը և թե մեր կազմակերպությունը։

Ավելի լավ հիմքերի վրա պիտի դնենք կոլեկտիվների աշխատանքները, վորպեսզի նրանք ավելի հետաքրքիր ու գրավիչ լինեն։ Խուսափենք չոր ու ցամաք ժողովներից և դատարկ թմբկահարություններից, վորոնք պիոներներին ձանձրացնում և վոչինչ չեն տալիս։

Պիոներական կոլեկտիվները պետք է կապվեն իրար հետ, փոխադարձաբար ծանոթանան իրենց տարած աշխատանքների հետ։

Հարկավոր է վորպեսզի պիոներական կազմակերպությունը կապ հաստատի կապիտալիստական յերկիրներում պայքարող ու աշխատող պատանեկան կոմմունիստական խմբերի հետ։ Հետո գալիս է աշխատանքն ընտանիքում, անապաստանների մեջ և այլն։ Այդ խնդիրները կարող է լուծել պիոներական կազմակերպությունը կոմյերիտմիության ղեկավարությամբ։

Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# ՀԼԿՅԵՄ ՉՈՐՐՈՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՄԱՍԻՆ

## ՄԵՐ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

Պիոներական շարժումը հետզհետե ավելի ու ավելի յե լայնանում և խորանում։ Կար ժամանակ, յերբ պիոներների թիվը այնքան քիչ եր, վոր մատների վրա կարելի յեր հաշվել։ Այդպես չե հիմա։ Պիոներական շարքերը շատ ու շատ են աճել։ Կոմյերիտմիության համամիութենական 6-րդ համագումարի «մեկ կոմյերիտականին մի պիոներ" լոզունգը (նշանաբանը) վոչ միայն ամբողջովին, այլ նույնիսկ ավելին ե իրագործված։ Ներկայումս Հայաստանում պիոներների թիվը արդեն 31 հազարից անցնում ե։ Պիոներական կազմակերպության նվաճումներից մեկն ել այն ե, վոր նա որեցոր ավելի խոր արմատներ ե գցում գյուղում։

Պիոներական կազմակերպությունը քաղաքում և գյուղում, գործարանում ու դպրոցում անկազմակերպ պատանիների մեջ դաստիարակչական աշխատանք ե կատարում։ Նա իր հասարակական—գործնական աշխատանքներով ոգնում ե կոմյերիտմիությանը, մասնակցում ե մեր սոցիալիստական շինարարության գործին։ Նա իր շարքերում փոխարինողներին արժանի փոխարինողներ ե պատրաստում։

## ԲԱՅՑ ՊԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵԼ ԿԱՆ

Ինչքան վատ կը լիներ յեթե մենք միայն լավ կողմերը տեսնեյինք, իսկ պակասությունների առաջ փակեյինք մեր աչքը։

Ահա հենց այդ պակասությունների վերացման մասին եր, վոր մտածեց ՀԼԿՅԵՄ 4-րդ համագումարը։ Նա ցույց տվեց այն ճանապարհը, վորով պիտի առաջ գնա և զարգանա պիոներական շարժումը Հայաստանում։

## Ի՞ՆՉԸ ՉՊԵՏՔ Ե ՄՈՌԱՆԱՆ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

Ամենից առաջ պիոներական կազմակերպությունը միշտ պետք ե աշխատի կուսակցության և կոմյերիտմիության ղեկավարությամբ։ Առանց դրան նա կարող ե սխալներ գործել, մոլորվել իր ճիշտ ճամբից։

Կուսակցության 14-րդ համագումարը մեծ նշանակություն տվեց այդ ղեկավարությունն ուժեղացնելու հարցին։ Նա անհրաժեշտ գտավ, վորպեսզի կուսակցությունն ու կոմյերիտմիությունը շատ ավելի ուշադրություն դարձնեն պիոներական կազմակերպության վրա քան մինչեվ հիմա։

ՀԼԿՅԵՄ 4-րդ համագումարը նույնպես վորոշեց ավելի ուժեղացնել պիոներական աշխատանքների կոմյերիտական ղեկավարությունը։ Նա ասաց, վոր վոչ միայն պիոներական բյուրոներն ու կոլվարները, այլ նաև ամեն մի կոմյերիտական սրանից հետո ավելի մոտ պետք ե լինի պիոներներին, ոգնի նրանց աշխատանքներին։ Պիոներներն ել իրենց հերթին չպետք ե յերբեք մոռանան, վոր իրենք փոխարինողներին այն ժամանակ կարող են փոխարինել, յերբ միշտ աշխատեն կուսակցության ու կոմյերիտմիության ղեկավարությամբ։

## ԴԱՍՏԻԱՐԱԿՉԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Պիոներական կազմակերպության ներքին դաստիարակչական աշխատանքը դեռ բավական պակասավոր կողմեր ունի։

Մինչև հիմա ել մեր շատ կոլլեկտիվները զբաղվում են արտաքինով, ձևով (որ. թմբուկ), վորոնց տակ հաճախ դաստիարակչական վորևե աշխատանք չի կատարվում»—,գրված ե կուսակցության 14-րդ համագումարի վորոշումների մեջ։ Այս յերևույթը, ճիշտ ե, քիչ կա մեզ մոտ, բայց պետք ե բոլորովին վերացնել։ Յերգ ու թմբուկի հնչյունների տակ քայլելը, վատ չե, պիոներների համար շատ լավ ե. բայց այնպես պիտի լինի, վոր մենակ թմբուկը և ,,աջու ձախը" աշխատանքի տեղը չբռնեն, նրանց ել տեղ մնա։

Մյուս, ավելի շատ տարածված թերությունն այն ե, վոր մեր կոլլեկտիվներից շատերը զուտ քաղաքական չոր ու ցամաք հարցերով են զբաղվում։ Նրանք իբար յետեվից ժողովներ են գումարում, պիոների համար անհասկանալի զեկուցումներ են կազմակերպում։ Այդպիսի ճառերից պիոներները հոգնում և ձանձրանում են։

Թմբուկն ու քայլերգը, պիոներական զանազան զվարճությունները ու խաղերը պիտի լինեն ու լինեն։ Դրա հետ միասին, պիոներները քաղդաստիարակություն ել պետք ե ստանան, բայց վոչ այն ձևով, ինչպես կոմյերիտմիության մեջ։

Պիոներների հետ պիտի խոսել շատ պարզ հարցերի մասին և հասկանալի ձևով, միշտ օրինակներ բերելով դրա շրջապատից։

### ԱՎԵԼԻ ՄՈՏ ԴՊՐՈՑԻՆ

Պիոներական շարժումը պետք է ավելի մոտեցնել դպրոցին, ավելի սերտ կապել նրա աշխատանքների հետ։ Այսպես պիտի դասավորել և հարմարեցնել աշխատանքները, վորպեսզի դպրոցն ու պիոներական կոլեկտիվը չխանգարեն, այլ նպաստեն միմյանց։ Յեթե այդպես չանենք, այն ժամանակ, կամ դպրոցական պարապմունքները կը տուժեն և կամ կոլեկտիվի աշխատանքները։ Իսկ յերբ պիոներն աշխատի այդ յերկուսից էլ հետ չընկնել, նա ֆիզիքապես կը քայքայվի։ Պիոներները պետք է այդ և ուրիշ տեսակի ծանրաբեռնումից ազատ լինեն։

### ԱԿՏԻՎԸ ՊԵՏՔ Է ՊԱՏՐԱՍՏՎԱԾ ԼԻՆԻ

«Բժշկական և մանկավարժական տեսակետից գոնե տարրական կրթություն ունեցող կոլվարներ ունենալու խնդիրն ևս չափազանց հրատապ է», — ասել է կուսակցության 14-րդ համագումարը։ ՀԼԿՑԵՄ 4-րդ համագումարն ևս պիոներական լավ փորձ ունեցող ակտիվ պատրաստելու հարցի վրա հատուկ ուշադրություն դարձրեց։

Այս և ուրիշ շատ և շատ վորոշումներ հանեց ՀԼԿՑԵՄ 4-րդ համագումարը, վորոնց միջոցով ավելի պիտի կանոնավորվեն և լավ հիմքերի վրա դրվեն պիոներական աշխատանքները։

ՀԼԿՑԵՄ 4-րդ համագումարի բոլոր վորոշումներով ղեկավարվելով, պիոներնե՛ր, պատրաստ։

---

ՍԱՐՄԵՆ

## ԱՐԻ ԳԱՐՈՒՆ

Ծաղկոտ, ծիծաղկոտ գարուն,
բույրով աղբյուրով արի՛,
կարմիր աշխարհի սրտում
խնդում արևով վառի։

Բե՛ր վարդեր, թիթեռ ու թառ,
մեր հյուղերը գյուղի.
մեր դեմ ժպտադեմ ու վառ
գծիր անծիր մի ուղի։

Մտի՛ր գործարան ու հանք,
խոնավ խավարում շողա.
դու սեր, հրճվանք ու կյանք՝
ծաղկոտ, ծիծաղկոտ տղա։

ՔՆԱՐԻԿ ՇԻՐԱԿՈՒՆԻ

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՅԵՐԳ

Մենք հիմա այս նոր կյանքում
կարմիր ենք ու ժիր, արի,
յերգել գիտենք, յերգել գիտենք,
թռիչքը նոր օրերի։

Պիոներական կյանքը նոր է,
հներն անցան, հեռացան,
հեռու, հեռու մեր օրերից,
վախից ցիր ու ցան դարձան։

Մերն է կյանքը, պիոներնե՛ր,
կյանքը նոր է, ժրաջան.
մեր մայրն է մեծ Հոկտեմբերը,
մենք զավակներն ենք նրա։

Ով ուզում է մեզ պես ուրախ
գործի, յերգի միշտ ազատ,
թող գա յեվ մեր շարքը մտնի,
յեղբայր դառնանք հարազատ։

ՄԿՐՏԻՉ ԱՐՄԵՆ

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՏՈՒՆ

Իջնում եր յերեկոն քաղաքի վրա,
խավարը լցվում եր պարտեզ ու դուռ,
փռվում եր յերկնքի կապտասև վրանը,
գնում եյինք մենք պիոներ-տուն։

Ներսում սեղանները թերթերի բեռի տակ
սպասում են ամենքիս, ինձ, քեզ.
ներսում պահարանը, գրքերի դարակը,
գրքերն սպասում են—ո՞ւմ.—մեզ։

Դահլիճ ենք շինում. պատրաստում ենք բեմը,
պիոներ-տունը դառնում է ընդարձակ,
ու դրել են սպիտակ անկյունում դեմի,
Մարքսի ու Լենինի արձանը։

Բայց վորքան էլ յեռուն լինի պիոներ-տունը,
վորքան էլ լինի նա ընդարձակ,
եգուց այս ամբողջ յերկրագունդը
կդառնա մի տուն պիոներական։

Ու մեր մեծ ընկերներ բանվորի, գյուղացու,
ու բոլոր աշխատող մարդկանց հետ մենք,
եղ պիոներ աշխարհի օծիքի վրա
պիոներական փողկապ կկապենք։




Ձյունն անդադար թափվում էր ու գյուղը ծածկում։

Ցերկու խոշոր աչքեր, խաղողի հատերի պես, պսպղացին դռնակի արանքից։

Քիթը կարմրած՝ հետ քաշվեց փոքրիկ Լիլոն, փըչելով ձյունի փաթիլներին։ Մին էլ նորից լեզուն հանեց դռան արանքից, յերբ մի մեծ փաթիլ սառը շաքարի պես սլլաց լեզվի վրա։

— Փուհ,— ժպտաց Լիլոն, ուսերը վեր-վար արեց ու ցատկեց մխացող ոճախի կողքը։

Լիլոն վեցը տարեկան էր, կրակի մի կտոր։ Նա ենքան աշխույժ ու ծիծաղկոտ էր, ենպես էր վտվըտում, ինչպես գարնան վտակը. սեվ մազերը թափվում եյին սիրուն ճակատին, իսկ այտերը նռան պես կարմիր եյին։

Լիլոն պպզեց կրակի կողքին ու ձեռները տաքացնում էր, իսկ պառավ տատին ծալապատիկ նըստած՝ գուլպա յեր գործում։

Մերթ-մերթ, Լիլոն նայում էր տատի կնճիռներին ու մտածում.

— Ինչքա՞ն ճիճուներ կան տատիկի յերեսին։

Լիլոյենց խրճիթը շատ աղքատիկ էր։ Մեջ տեղը մի հին խոնչա յեր դրած, թարեքին մի քանի բրեղան. մութ անկյունում յերկու մեծ կճուճներ եյին կանգնած։ Ոճախի կողքին էլ թախտն էր, վրան մաշված, փռված անկողինը։

Սակայն ի՞նչ ցավ Լիլոյին. իսկի հոգսը չէր, թե խոնավ ու մութն էր խրճիթը յեվ իրենք աղքատ։

Նա շատ անգամ սարդի վոստայնը փաթաթում էր մատներին ու խրճիթում վազվզում, կամ կատվի պես գուլպի կծիկն էր խաղացնում ու տատին բարկացնում։

Ելի անհանգիստ էր նա. վեր թռավ տեղից, դուռը բացեց, ձյունի մեջ մի լավ վոտները թփթփացրեց ու ներս ընկավ խրճիթ։

— Ա՛, անդինջ կրակ, ա՛յ սրտի մաշոց, խի՞ չես դադարում,— բղավեց պառավ տատին գուլպի հասը գցելով։

Լիլոն սովոր էր տատի մշտական անեծքներին. իսկի չվախեցավ։ Նա պտտվում էր տատի չորս կողմը, աչքերն ոճորքին էր գցել ու փլթփլթացնում էր ոճախի վրա սպասի պես։

— Տատի սպաս եմ յեփում,—ասում էր նա ու մատներով կոկորդին խփում.

— Նան...գըլ-փըլթ-փըլթ...

— Ցարար քու հավեսից ո՞վ ունի,— տնքում էր նեղացած տատն ու դմբուզով խփում Լիլոյի վոտին։

— Մերդ յեդացավ, հիմի ենքավ ջուր կրեց, վոր թոքերը բերանը յեկան...

Մենակ տատի եդ խոսքերն եյին, վոր փախցընում եյին Լիլոյի ուրախությունը։

Հիշեց մորը, վոր առավոտը վաղ սառած ձյունի վրայով վազեց հարեվանի տունը ջուր կրելու։ Մայրիկի պատառոտված շալը... հազիվ էր գլուխը ծածկում. իսկ պատռված շորերից ցուրտը կմտնի, ինչպես կմրսի,— մտածեց տղան, աչքերը տխուր վոլորեց ու մատը բերանում կանգնեց։

— Մայրի՛կը,— բացականչեց նա ու վիզը ծուռ պպզեց տատի կողքին։

— Ախ Մարուշ, մերդ քոռանար, վոր քեզ խալխի դռներին չտեսներ,— հառաչում էր տատը։

Լիլոն լուռ էր։ Նա լայն բացած բիբերով նայում էր շարժվող մլերին։ Լիլոն հասկանում էր ու տխրում։

ԴՄԲՈՒԶԸ ՍԵՂՄԵՑ

— Ցո՛ւրտ ե, ցո՛ւրտ, ո՛ւֆ,— սարսռում էր փոքրիկ Լիլոն, վոտներն ու ձեռները կծկելով։

Նա գնում էր մոր մոտ։ Տատին էր պատառոտ-

[վ]ած շալը կապել էր Լիլոյի թիկունքով, մի թայ բըր-[դ]ի գուլպեն էլ մինչեվ ծունկը քաշել, իսկ մյուս ծուն-[կ]ը բաց էր։

Առավոտվա ցուրտը մտնում էր Լիլոյի ծոցն ու դանակի պես կտրատում։ Վազելիս մաշված չուստերը դուրս էյին գալիս ոտներից ու Լիլոն ստիպված էր ամեն անգամ կանգ առնել՝ չուստերը ոտն անցկացնելու համար։ Նրա աչքերը ցրտից ջրակալել էյին ու քթից ջուրը ծորում էր։ Սակայն Լիլոն էլի ժպտում էր, թարթիչները սառը չերեսին ճպելով։

— Է, Լիլո՛, ո՞ւր ես գնում,— բղավեց Միսոն նրա [ճ]ամբեն կտրելով։ Միսոն մենակ բլուզով էր, մեծ [խ]ափախն իջեցրել էր ականջների վրա, իսկ բկին [կ]արմիր կտոր էր կապել։ Լիլոյի աչքերը հենց Միսոյի [վ]զին ընկան, մատը պարզեց, քիթը վեր քաշելով,— [Տ]ղ կարմիրը տուր...

— Առ քեզ,—կատակով դմբուզ արեց պիոներ [Մ]իսոն։

— Ա՛յ,—մի ոտն առաջ գցեց ու դմբուզը սեղմելով, բղավեց Լիլոն։ Մնաց, մնաց ու հոնքերը խոժոռելով, հարձակվեց Միսոյի վրա։ Միսոն բռնեց Լիլոյի ձեռներն ու հրհռաց.

— Ես ի՞նչ պուճուր է Լիլոն, ես ի՞նչ ղոչաղ է Լիլոն...

Լիլոն զայրույթից ոտները խփում էր ձյունի մեջ։

— Լա՛վ, Լիլո ջան, հանաք եմ անում,— ասավ Միսոն ու մեղմ ժպտաց։

— Դե ասա՛, ո՞ւր ես գնում։

Լիլոն անվստահությամբ նայեց, նայեց ու պատասխանեց.

— Իմ մայրիկի մոտ, ենտե՞ղ։

— Ցես էլ գնում եմ մարզանքի, մեկ, յերկու, մեկ, յերկու...

Միսոն ոտներն աշխույժ թփթփացրեց ձյունի վրա։

— Հո՛փ—Միսոն թեթեվ խփեց Լիլոյի թշին ու յերգ ասելով վազեց։

Լիլոն նրա հետեվից նայում էր ու մտածում— ախր ո՞ւր գնաց Միսոն, ինչո՞ւ չէր կապել են կարմիրը։

Տղան ձեռքը տարավ դեպի իր բուկն ու բռնեց մաշված շալի փնջերը։

— Չէ՞, Միսոյի բուկը լավն էր։

ԵՆՊԵՍ ԽԵԹԵՑ

Մարուշը մաքրում էր Նազլույենց բակը։ Մատներն իրար էյին կպել ցրտից յեվ հազիվ էր ավելը շարժում։ Քիթն ու ականջները մի կերպ ծածկել էր շալի տակ, բայց ոտները, թեվերը փետացել էյին։

Լիլոն, յերբ մորը տեսավ, հիշեց տատի խոսքերը, ջրակալած աչքերը ճպճպացնելով՝ վազեց, մոր փեշերով փաթաթվեց ու ավելը խլում էր ձեռքից։

— Տուր յես խտակեմ, դու սառ ես մրսել։

Մարուշը գրկեց իր Լիլոյին ու պինդ պինդ համբուրեց։



— Բալիկ ջա՛ն, Լիլո՛, մեռնեմ քու սրտին, ախր թաթիկներդ սառել են, ո՞ւր չեկար։

— Չէ՛, թող յես խտակեմ, մայրը մի կողմ քաշված նայում էր. իսկ Լիլոն մեծ ավելով սրբում էր ձյունը։

— Է՜, աղջի՛, գործի՛դ կաց,—բղավեց Նազլուն շեմքը դուրս գալով։

— Ա՛յ պուճուր, գնա ձեր տուն, մորդ բանից մի գցի։

Լիլոն տեսավ Նազլուին տաք-տաք շալում փաթաթված, վոր իսկի չեր մրսի։ Ապա նայեց պատառոտված շորերում կուչ յեկած իր մորը, Լիլոն մի բան հասկացավ, ավելը ձեռքից գցեց ու ենպես խեթեց Նազլույին...

— Այ, լակոտ ի՞նչ ես վրես պճպճում, լա՛վ, արի չափած կարտոլ տամ։

— Չեմ, պետքը չի՛.—Լիլոն ասեց Նազլուին... Նա քաշքշում էր մոր փեշերից.

— Գնանք, մրսում ես։

Մին էլ դուրս յեկավ Նազլույի տղան, փոքրիկ Գեպանը՝ թշերը բոքոնի պես ուռած, փորը տնկած ու բերանը կարտոֆիլոտ։

— Եյ, մեր դռանն ի՞նչ ունես զլզլացրեց Գեպանը՝ լեզուն Լիլոյի վրա հանած։

Լիլոն վրա վազեց, վոր մի լավ խփի Գեպանի փորին, բայց Մարուշը բռնեց նրան։

— Ես ի՞նչ սատկու կրակ լակոտ ա ,փնթփնթաց Նազլուն, Գեպանին ներս քաշելով։

Լիլոն էլի քաշքշում էր մոր փեշերից, Մարուշն աչքերն արցունքով լցրեց ու շնչաց։

— Ախ Լիլո՛, գո՛րծ անեմ, վոր հաց բերեմ։

Լիլոն տխուր էր, բերանի գոլով ձեռները տա-

բացնելով, գնում էր տուն։ Երբ հիշում էր Պետյանի փորը, զայրանում էր ու վոտը խփում ձյունի մեջ։ Մին էլ հիշում էր Սիսոյի բուկը, շշնջում.—ի՞նչ լավն էր…

### Ի՞ՆՉ ՍՈՎՈՐԵՑ

Լիլոն ականջ էր դրել, աչքերը պլշացրել դռան արանքից։

Մի մեծ խրճիթ էր, վորտեղ հավաքվում էյին պիոներները պարապմունքների համար։

— Ա՛յ տղերք, եսպես պիտի մարզվել. աջ, ձախ աջ։

Մի ուրիշ տղա յել բկին կարմիր էր կապել։ Լիլոն մտածեց։

— Հրես Սիսոյի նման սրա բուկն էլ, ախր ինչո՞ւ…

Նա մոռացել էր ցուրտը, նայում էր մին պիոներներին, մին էլ պատին կպցրած մեծ նկարին։ Ձյունն անդադար թափվում էր ու ծածկում Լիլոյի փոքրիկ գլուխը։

— Ո՜ւֆ ցուրտ է,—դողացրեց նա ու սառած ականջները բռնեց ձեռներով։

Սիսոն դուռը հանկարծ բացեց ու դիպավ Լիլոյի կապտած քթին։

— Ո՜, պուճուր Լիլո, նրի մեզ մոտ տարացի,—քաշեց տարավ ներսը։

Պիոներները շրջապատեցին Լիլոյին, այնպես լավ էյին խոսում, այնպես էյին ժպտում, վոր Լիլոն աչքաբացվեց։ Քիչ հետո սիրտ առավ ու հարցրեց.

— Ես ձեր տունն ա՞։

— Ես մեր տունն ա, մենք ըստեղ սովորում ենք, հետո ես մեր մեծ-մեծ ուսուցիչն ա՝ Լե…նին,—խոսեց Սիսոն, մատով ցույց տալով Լենինի նկարը։

— Լե…լին—կամաց կրկնեց Լիլոն ու քաշվեց պատի տակ։

— Դեհ արի Լիլո, մի՛ ամաչի, մենք քեզ լավ բաներ կսովորեցնենք,—ամեն կողմից կանչեցին պիոներ տղերքն ու Լիլոյին մեջտեղ քշեցին։ Լիլոն շատ ուրախ էր, չէր ծիծաղում, հասկացավ, վոր ըստեղ բան ի սովորում։ Նա նորից շշնջաց.

— Լե…լին,—ու խոշոր աչքերը կանգնեցին Լենինի նկարի վրա։

— Ա՛յ եսպես, ձեռներդ, վոտներդ շարժի, վոր չմրսես,—սովորեցնում էյին պիոներները։

— Եսպե՞ս,—հարցնում էր Լիլոն, ձեռները վեբեվ բարձրացրած։

— Եսպե՞ս,—կռացնում էր մեջքն ու լուրջ նայում տղաների յերեսին։ Պիոներներից յերկուսը՝ չարաճճի Ափոն ու Սահակը, փափախներով խփեցին Լիլոյի մեջքին ու հեռացին։ Լիլոն նոթերը կիտած, հետ-հետ քաշվեց։ Բայց մյուս պիոներները նրան նորից ուրախացրին։ Ենքա՜ն սիրեցին Լիլոյին։

Միսակն իր փողկապը նվիրեց նրան, իսկ Սիսոն տվեց իր ունեցած Լենինի նկարը։

— Տես Լիլո՛, ո՞վ վոր չսովորի, Լե…նին, վոչինչ ի իմանա։




Լիլոն ուրախ ուրախ նկարը ծոցը դրեց, իսկ փողկապը պինդ կապ տվեց բըկին։ Տղաները ծիծաղից թուլացան։ Լիլոն լուրջ էր, հասկացավ, վոր ինքն էլ պիտի սովորի. աշխույժ աշխույժ հարցրեց.

— Բա՛ ես ինչի՞ համար եք կապում։

Մենք սովորում ենք ու հասկանում Լենինի գործերը, պիոներներ ենք ու կապում ենք եդ կարմիրը, ապա եսպես մարզվում… Լիլոն աչքերը անթարթ պահած լսում էր։

— Տղերք սա մեր հոկտեմբերիկն է,—բղավեց Սիսոն։

— Լիլոն մեր հոկտեմբերիկն է,—կրկնեցին միաբերան մյուսները։ Սիսոն վերջին անգամ Լիլոյին սովորեցրեց ասել վոչ թե Լե…լին, այլ Լե…նին

Լիլոն վիզը յերկարացրեց, ու ճիշտ կրկնեց՝ Լե…նին…

— Լիլոն շատ խելոք է, Լիլոն շուտ է սովորում,—բղավեցին պիոներները։

Լիլոն էլ մոռացել էր սարդի վոստայնը. հիմի ուրախանում էր իր կարմիր բկով ու Լենինի նկարով, վոր կպցնում էր ես կամ են պատին։

— Տատի, տե՛ս իմ բուկը, տատի, տե՛ս ես նկարը. սաս Լե…նին.—վազվզում էր ու էլի կրկնում Լե…նին։

Տատը քթի տակ ծիծաղում էր ու սսում,—ես մեր Լիլոն գիժ է, հիմի էլ ուրիշ բաներ է ճարել. Լի՞լի՛ն ով է, Լիլո ջան.

— Է՛ տատի՛, լիլի չի, բերանը լայն բացած կանգնում էր Լիլոն տատի առաջ ու բղավում.

— Լե…նի՛ն…



### ԱՐՑՈՒՆՔՈՏ ԱՉՔԵՐՈՎ

Լիլոն ելի բարկացրեց տատին ու նույնպես թռավ խրճիթից, որ չլսաի թայն եկ շեմքում թողեց։

— Է, Կալո՛, Շամուն, Ծիտո, կանչում էր իր ընկերներին։ Դուրս փախավ Կալոն, փափախը գլխին. են մյուս կողմից Շամունն էր վազում պատառոտված շորերով ու մեկ էլ չերևվաց Ծիտոն իր մեծ-մեծ թաթ մաններով։

Նրանք կռացան, որ ձնագնդի կոլոլեն. եւ ա զամ Լիլոն չկռացավ։

— Չէ, ես ձնթափ չեմ խաղում, չեկեք ետեղ մ ուրիշ բան...

— Տես, Ծիտո, Շամուն, ու կամաց ծոցից հանեց Միսոյի տված Լենինի նկարը։

Ցերեխաները գլուխներն իրար կպցրած՝ կռացան նկարի վրա, Ծիտոն հետ քաշվեց ու բղավեց.

— Են, հրեն մեր տանն էլ մի մեծ նկար կա, ա՛յ ենենց մեծ ծի ա ու վրեն սուրբը նստած, որ տեհնա՞ք։

Լիլոն սուր աչքերը փոլորեց Ծիտոյի վրա.

— Հա, բա՛ ձեր տա՛նը. ու բրդեց Ծիտոյի կրծքին։ Նա կամաց մատը տարավ նկարի վրա, մտածում էր, ուզում էր հիշել։

Հանկարծ բացականչեց.

— Այ Շամուն, Կալո ասեք՝ Լե...լե... կմկմաց ու խոժոռեց ճիրեսը. ընկերները զարմացած սպասում էին—Լե...նի՛ն,—վերջապես հիշեց ու ուրախությունից ցատկեց տեղում։

Մինչ չարաճճի Ծիտոն թավալում էր ձյունի մեջ Շամունն ու Կալոն ականջ էին դրել Լիլոյին.

— Մենք էլ գնանք Լիլո, մենք էլ գ անք,—ուրախանում էին նրանք։ Ուրիշ չերեխան ն էլ հավաքվեցին Լիլոյի գլխին։ Լիլոն հպարտ-հպ րտ ցույց էր տալիս նրանց Լե...նին։

— Պա՛հ, Լիլոյի բկին տեսե՛ք, զարմա ւմ էին չերեխաներն ու գոռգոռում։

Լիլոն ենքան ուրախ էր. ընկերներին շարքով կանգնեցրեց, ինքն էլ առաջ ընկավ, տանում էր դեպի պիոներական տուն։

Մին էլ մի մեծ ձնագնդի թմբաց Լիլոյի քթին։ Անբարիշտ Պուպուշն էր, խփեց ու հրհռաց, ձեռները մեջքին պահած։

Լիլոյի քթից արյունը ծլծլաց. չերեխաները շաղ չեկան։ Լիլոն քիթը բռնած, վրա հասավ ու կռվի բռնվեց Պուպուշի հետ. չերկուսով թավալվում էին ձյունի մեջ։ Լիլոյի ընկերներն օգնում էին ու ձյունը թափում Պուպուշի գլխին։ Պուպուշը հազիվ փախավ, Կալոն, Շամունը հարայ էին տալիս ու շվացնում։

Լիլոն թափթափ տվեց շորերը, թիկունքի շալն ավելի չեր պատռվել ու կախվել։

Հանկարծ ձեռը տարավ ծոցն ու շփոթված բղավեց.

— Վա՜։

—Ցերբ կռացավ փնտռելու տեսավ ձյունի մեջ, բացված Լենինի նկարը։

Լիլոյի աչքերն արցունքոտեցին, ներքին շրթուն-

քը տմբտմբացրեց, իրեն կորցրած վազեց, մի հատիկ չուստն եւ ծյունի մեջ թողնելով։ Ցերեխաները հազիվ եյին հասնում նրան, իսկ հանցավոր Պուպուշը վախից թնկթնկում եր։

Ներս ընկավ Լիլոն պիոներների տունը։ Այնտեղ մի քանի պիոներներ կային, վոր չկարողացան նրան հանգստացնել։ Լիլոն կանգնեց Լենինի նկարի առաջ ու արցունքները գլգլացին սառած այտերի վրայով։ Հենց եդ ժամանակ Սիսոն ներս մտավ, Լիլոյի սիրտը լցվեց ու հեկեկալով կրկնեց Լ...ե...ն...ի.ի.ն...

Ցերեխաները լուռ ու տխուր նայում եյին Լիլոյին։

Սիսոն չեր հասկանում ի՞նչ ե պատահել, մինչեվ վոր Կարոն ու Շամոնը մի կերպ պատմեցին։

Սիսակը գրկեց Լիլոյի գլուխը.

— Մի տխրի Լիլո, եկի մի նկար կտամ քեզ, եկի փայլուն աչքերով, ի՛սկ նրա պես՝ Լե...նին։

— Բա եկի՞ կսովորեմ,—հեկեկալով խոսեց Լիլոն։—Հա, հա, Լիլո՛ ջան, ամեն որ արի ստեղ. են-քա՜ն բան սովորես...

— Մենք եւ, մենք եւ,—խնդրեցին Լիլոյի ընկերները։

— Դո՛ւք եւ, դո՛ւք եւ Լիլոյի հետ կգաք շաբքով,—բացականչեցին պիոներները։ Ցերեխաները շատ ուրախ եյին։ Կարոն յեվ Շամոնն առաջ եյին ընկնում ու խոսում։ Լիլոն արդեն հանգստացել եր ու պատռված թեվով սրբում եր արցունքոտ աչքերը։

Սիսոն նորից մատը տարավ նկարի վրա ու ասեց—Լե...նին, յերեխաները խառը ձայներով ուզում եյին կրկնել. վո՞րն ասում եր Լի...լի... վորը Լե...նի նրանք նոր եյին սովորում։

Լիլոն սպասեց, սպասեց, արցունքոտ աչքերով նորից ժպտաց ու բարձր գոչեց Լենի՛ն։

Գիշերը Լիլոն քնած ժամանակ բղավեց։

— Լենին։

Տատն ու մայրիկը վեր թռան տեղերից ու վախեցած կանգնեցին Լիլոյի մոտ, կարծում եյին թե նա հիվանդ եր։ Սակայն Լիլոն քնած եր ու յերազում եյի՛ սովորում եր Լենին։

---

# ՅԵՐԻՏԱՍԱՐԴ ԳՎԱՐԴԻԱ

*(Կոմյերիտական քայլերգ)*



Դիմենք, լույսին ընդառաջ
Ընկերնե՛ր, դեպ պայքար
Սվիններով ու գնդակով
Հարթենք մեր ճանապարհ։
Ամուր քայլենք վստահ հառաջ
Ու վեր պահենք Միության դրոշ,
Մենք յերիտասարդ—գվարդիա
Բանվոր ու գյուղացու։ } կրկնել

Ջե վոր բնքներս կըրել ենք
Հարկադրիչ աշխատանք.
Մենք մանկություն չենք տեսել
Ծորտ յեղած ժամանակ.
Մեր հոգու վըրա կըրել ենք
Անթափանց խավարի սև քող.
Մենք յերիտասարդ—գվարդիա
Բանվոր ու գյուղացու։ } կրկնել

Յեվ քրտինքում շաղվելով,
Փուրայի մոտ կանգնած,
Ստեղծել ենք աշխատանքով
Գանձեր այլոց համար.
Այդ Աշխատանք վերջի վերջո
Հենց մեզնից մարտիկներ կոփեց.
Յեվ յերիտասարդ գվարդիան
Բանվոր ու գյուղացու. } կրկնել

Մենք բարձրացնում ենք դրոշակ
Ընկերնե՛ր, ո՛ն, հառաջ...
Յեկեք կերտենք միասին
Աշխատանքի աշխարհ։
Վորպեսզի Աշխատանքն իշխե,
Բոլորին մի ընտանիքում ձուլե.—
Դեպի մարտ յերիտասարդ գվարդիա
Բանվոր ու գյուղացու. } կրկնել

ԽՆԿՈ ԱՊԵՐ

Նկ. ՀՌՈՑԻ



# ԽԱՓՇԻԿ ՋՈՅԻԿՆ ԻՆՉՊԵՍ ՊԻՈՆԵՐ ԴԱՐՁԱՎ

*(Փոխ. ռուսերենից)*

*Կար մի խափշիկ—*
*անունը Ջոյ,*
*իր հայենի Աֆրիկայում*
*ապրում էր շատ*
*ուրախ ու գոհ։*

*Էնտեղ շուրջն է*
*շատ գեղեցիկ.*
*կապիկները*
*հա կուչ ու ձիգ.*
*գլխակոնծիկ*
*գունդ ու կծիկ*
*թռչկոտում են,*
*ղժժում, ճչում։*



*Թութակները*
*հա կչկչում,*
*առյուծները*
*Զիլ մռնչում։*

*Կոկորդիլոսն*
*առվում ննջում.*
*Բեգեմոտը*
*կամաց, կամաց*
*լող է տալիս*
*բերանը բաց։*

*Ընկեր էյին*
*էն խափշիկ Ջոն,*
*մեկ էլ փիղը*
*բարի Ջամբոն.*
*Նա կնճիթով*
*վեր էր առնում*
*իր Ջոյիկին.*
*մեջքին դնում։*

*Յեվ Ջոյիկը՝*
*փոքրիկ տեղով*
*ման էր գալիս*
*հսկա փղով.*
*դաշտ ու հովիտ,*
*սարեր, ձորեր,*
*էստեղ, էնտեղ,*
*մեկ վար, մեկ վեր։*



*Էն Ջոյիկը*
*մի հետ տեսավ,*
*վոր լողում է*
*մեծ շոգենավ.*
*միջին լիքը*
*մարդ սպիտակ.*
*յեվ բոլորը*
*զենքերի տակ։*







Դուրս թափվեցին
բոլորով ափ.
Ջոյին, փղին
հա խաբեխաբ
ուղիղ տարան
մեծ շոգենավ.
շոգենավն էլ
իսկույն թռավ։

Ջոյը լացեց.
«Էլ հույս չկա,
մնաս բարով
իմ Աֆրիկա։

Ջամբո, Ջամբո,
օտար յերկրում,
իմը մենակ
դու յես մնում»։

Շոգենավն էր՝
լողաց, գնաց
ու մի օր էլ
կանգնեց, մնաց։

Դուրս թափվեցին
շոգենավից.
քաղաք տեսավ
Ջոյը հեռվից։

Սևուկ Ջոյին,
փիղ Ջամբոյին
գազանանոց
շուտով բերին։

Կեր, ջուր տվին՝
հետն էլ ասին.
«Եդտեղ ապրեք
դուք միասին»։

Ջոյն է նայում.
վանդակներում
քանի՜ գազան.—
վագր, առյուծ,
չախալ, լուսյան
ու մարդագել։

«Ա՜խ, յես ձուր եմ,
ձուր եմ ընկել»։
Ա՜յ քեզ ոյին.
փիղ Ջամբոյին

հենց նույն թվին
խրատ տվին—
իրեն մարգել,
պըպ-պպգել.
պարել, վազել,
շարման ածել,
ծիծաղեցնել,
զբաղեցնել։

Ջոյն էլ խափշիկ՝
ձեռքին թեփշիկ՝
համ յերգում էր,
համ վազվզում,
տիրոջ համար
փող էր ուզում։

Տերը չար էր.
ու սաստիկ խիստ.
Ջոյին տանջում
ծեծում էր միշտ։

Ջոյն էր լալիս
հոնգուր, հոնգուր,
«Ջամբո, կորանք
ես ձուր ենք, ձուր»։







Ջոյը մի հետ դուրս յեկավ
յեվ փողոցում ինչ տեսավ.
կարմիր դրոշ…
յերեխեք…
կռվի քայլերթ…
կռվի յերգ…

Ջոյը
կանչեց. «կարճիկներ,
ո՞վ եք դուք, ո՞վ քաջիկներ,
ձեր մեծն ո՞վ է, դուք լրիվ
եդ ո՞ւմ դեմը մեծ կռիվ։
Պատասխաններ՝
ես հանգի.
— Մենք մարտիկներ,
նոր կյանքի,
պիոներներ՝
միշտ զգաստ։

Յեվ մեր կանչը՝ —
«Միշտ պատրաստ»։
Մեր խմբի մեջ շուտ
վազ տուր,
Գերությունից դու
փախիս տուր.
Ի՞նչ ես մնում
եղտեղ ճորտ։
Մեզ ղեկավար,
առաջնորդ
Լենին՝
Կռվում ահարկու
դեհ, քայլերթիր
մեկ,
յերկու։
Յեվ Ջոյը՝
մի յերկու վոտ

Թռավ հասավ նրանց մոտ։
Ասավ. — ահա,
յես էլ ձեզ պես
պիոներ.

Ջամբոն նույնպես
կանգնեց շարք
բռին կարմիր
դրոշակ։

Ու սկսեցին
մեկ,
յերկու,
մեկ,
յերկու
քայլերթել,
փողոց-փողոց
ճամբորդել։



ՀՐԱՄԻՐ

# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՈՒԹԸ ՏԱՐԻՆ

### ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՈՒԺՆ ՈՒ ՊԱՐԾԱՆՔԸ

*Ո՞վ չի հիացել, յերբ փողոցները սվիններով ողակած՝ անցել են կարմիր բանակային շարքերը:*

*Ո՞ւմ սիրտը թունդ չի առել, յերբ լսել է կարմիր յերգերը նրանց, յերգերը պայքարի:*

*Բոլորս հպարտանում ենք կարմիր բանակով, բոլորս սիրում ենք նրան:*

*Կարմիր բանակը տարել է իր ուսերի վրա աշխատավորների մղած պայքարի ծանրությունը:*

*Նա հաղթական կերպով դուրս գալով յերկարամյա կռիվներից, ցույց է տվել ամբողջ աշխարհին, վոր բանվորները և գյուղացիները, կարող են կառուցել, պաշտպանել ու ամրապնդել իրենց սոցիալիստական հանրապետությունը:*

### ՍՈՎՈՐԵՆՔ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

*Ամեն մի պիոներ, ամեն մի պատանի, պետք է իմանա կարմիր բանակի պատմությունը: Նա պետք է ուսումնասիրի նրա հերոսական անցյալը, վորից և օրինակներ վերցնի իր աշխատանքի ու պայքարի համար: Զոհվել հեղափոխության համար, մինչև վերջին շունչը պաշտպանել նրա նվաճումները, — այսպիսի դեպքերը կարմիր բանակի պատմության մեջ շատ ու շատ են: Նրանցով պետք է վոգեվորվի ու հպարտանա պիոները:*

### ԿԱՐՄԻՐ ԳՎԱՐԴԻԱՆԵՐ

*Հոկտեմբերյան հեղափոխության սկզբնական շրջաններում մենք դեռ բանակ չունեյինք: Դրա փոխարեն կային բանվորներից կազմված կարմիր գվարդիաներ:*

*Այդ կարմիր գվարդիաները կազմակերպված եյին դեռ Հոկտեմբերյան հեղափոխությունից առաջ: Նրանք հեղափոխական զինվորների հետ միասին, 1917 թվի. հոկտեմբերին ապստամբված բանվորների և գյուղացիների զինված ուժն եյին հանդիսանում:*

*Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո սեփականազուրկ յեղած գործարանատերերն ու կալվածատերերը ցանկանում եյին իրենց հին դրությունը վերականգնել: Նրանք ուզում եյին տապալել, հողի հետ հավասարեցնել բանվորագյուղացիական հանրապետությունը: Նրանց օգնում եյին ամբողջ աշխարհի կապիտալիստները զորքով, զենքով, փողով և այլն:*

*Ծանր օրեր եր ապրում խորհրդային իշխանությունը: Ռազմական փորձառություն դեռ չունեցող կարմիր գվարդիաներով վոչինչ չեր կարելի անել: Հարկավոր եր ստեղծել ուժեղ կարմիր բանակ, վորն ընդունակ լիներ պայքարել հակահեղափոխական կազմակերպված ուժերի դեմ:*

### 1918 թ. ՓԵՏՐՎԱՐԻ 23-ը ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ՕՐ

*Յեվ ահա 1918 թվ. փետրվարի 23-ին բանվորագյուղացիական կառավարությունը վորոշում է կազմակերպել կարմիր բանակ:*

*Ամենակարճ ժամանակամիջոցում այդ վորոշումն իրագործվում է:*

*Կարմիր բանակը կարողանում է վոչ միայն պաշտպանել խորհրդային հանրապետությունը բազմաթիվ թշնամիներից, այլև քշել նրանց յերկրի սահմաններից:*

*Ո՞վ ասես իր ուժը չփորձեց կարմիր բանակի հետ—Կրասնովը, Կոլչակը, Յուդենիչը, Դենիկինը, Վրանգելը. բոլորին վռնչացրեց կարմիր բանակը, ջարդ ու փշուր արեց:*

*Աշխատավորներն իրենց լավագույն զավակների արյան գնով պաշտպանեցին Հոկտեմբերի նվաճումները, չհանձնեցին իրենց դիրքերից:*

### ԻՆՉՈՒ ՊԵՏՔ Է ՄԵՐ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԸ ՄԻՇՏ ՈՒԺԵՂ ԼԻՆԻ

*Հիմա մենք խաղաղ պայմաններում ենք ապրում. Թնդանոթների վորոտն ու գնդակների ճարճատյուն չի լսվում այլևս:*

*Խորհրդային Միության բանվորներն ու գյուղացիները բարձրացնում են յերկրի տնտեսությունը:*

*Նրանք միացյալ ուժերով սոցիալիզմ են կառուցում:*

*Բայց կարո՞ղ ենք համոզված լինել, վոր սոցիալիզմի շինարարության գործին խանգարողներ չեն լինի:*

*ԽՍՀՄ կապիտալիստների աչքի փուշն է: Նրանք յերբեք չեն կարող հաշտվել ԽՍՀՄ ամրապնդման փաստի, սոցիալիստական շինարարության նվաճումների հետ:*

Դրա համար հարկավոր է ավելի ուժեղացնել, կազմ ու պատրաստ պահել կարմիր բանակը, վորպեսզի պահանջված դեպքում պաշտպանենք համաշխարհային հեղափոխության բերդը—Խորհրդային Սոցյալիստական Հանրապետությունների Միությունը։ Բացի դրանից պետք է բոլոր աշխատավորներն իմանան զենքի հետ վարվելու միջոցները, տիրապետեն զինվորական գիտելիքներին։ Ահա դրա համար խորհրդային իշխանությունը, կուսակցությունը ու կոմսոմոլը հրապարակ են նետել բոլոր աշխատավորների ռազմականացման լոզունգը։

Այդ ասպարեզում մեծ անելիքներ ունեն պիոներները։ Պիոներական կոլեկտիվներն, իրենց ակումբներում պիտի կազմակերպեն զինվորական անկյուններ։ Նրանք պետք է հրավիրեն կարմիր բանակայիններին զրույցներ անցկացնելու և այլն։ Ուսումնասիրել կարմիր բանակայինի աշխատանքն ու կենցաղը, դա պիոներական կոլեկտիվի աշխատանքներից մեկը պիտի լինի։

Սրա վրա մեծ ուշադրություն եր դարձնում ընկեր Ֆրունզեն, կարմիր բանակի կազմակերպիչն ու առաջնորդը։

«Պիոներների գլխավոր պարտականությունն է դառնալ կարմիր բանակայինի մոտիկ ընկերը և բարեկամը, ընկերական համակրանքով ոգնել նրան իր բավական դժվար աշխատանքի մեջ։

Կարմիր բանակայինը մեր Միության արթուն պահակն է. թող նա տեսնելով ձեր հոգացողությունը և սերը, զգա վոր ինքը մենակ չէ, վոր նրա հետ է մեր յերկրի ամբողջ աշխատավոր ազգաբնակչությունը, վոր գնահատում է նրա ծառայությունը և պատրաստ է աջակցել նրան։ Ծանոթացրեք կարմիր բանակայիններին պիոներական կյանքի, Սոցիալիստական Խորհրդային Հանրապետությունների Միության կազմակերպված պատանիների կյանքի հետ։ Դուք ինքներդ ել ծանոթացնեք կարմիր բանակայինների կյանքի հետ, ոգնեցեք, վոր նրանք լավ անցկացնեն իրենց ազատ ժամանակը»,—գրել է ընկ. Ֆրունզեն պիոներներին։

Կարմիր բանակի 8-րդ տարեդարձը թող ամեն մի պիոների ու պատանու հիշեցնի ընկեր Ֆրունզեյի այդ պատգամները։

Պատրաստվենք լինել կարմիր բանակայինների նման անձնազոհ մարտիկներ, նվիրենք մեր ամբողջ կյանքը հեղափոխության նվաճումները պաշտպանելու և ամրապնդելու գործին։

# ՄԵՐ ՑԵՂԲԱՅՐՆԵՐԸ ԲՈՒԼՂԱՐԻԱՅՈՒՄ

### ՈՎՔԵՐ ԵՆ ԻՇԽՈՒՄ ԲՈՒԼՂԱՐԻԱՅՈՒՄ

Հավանական է ամեն մի պիոներ ու պատանի լսած կլինի Բուլղարիայի[1]) մասին։

Բուլղարիան կառավարում է խոշոր հողատերերի ու գործարանատերերի ֆաշիստական կառավարությունը։ Գուցե վոչ մի յերկրում հեղափոխական բանվորները և գյուղացիները այնքան հալածանքի ու հետապնդման չեն յենթարկվում, վորքան Բուլղարիայում։ Մի քանի անգամ բանվորները և գյուղացիները ապստամբվել են, ցանկացել տապալել արյունարբու ֆաշիստների կառավարությունը, բայց ի զուր։ Նրանք թույլ են յեղել և պարտություն կրել։ Սակայն բուլղարական ֆաշիստները իրենց «հաղթանակները» թանգ գնով են ձեռք բերել։ Հարյուրավոր գյուղացիներ ու բանվորներ արյան գնով են ամրապնդել իրենց իշխանությունը։

### ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆՆԵՐԻՆ ՀԱԼԱԾԵԼՆ ՈՒ ՍՊԱՆԵԼԸ ՍՈՎՈՐԱԿԱՆ ԲԱՆ Է

Բուլղարական ֆաշիստների արյունարբու կառավարությունը տասնյակ և հարյուրավոր կոմունիստների, բանվորների ու գյուղացիների կախաղան է բարձրացրել։

Մինչև հիմա բուլղարական բանտերում հարյուրավորներ ու հազարավորներ են տառապում։ Անխնա ձերբակալում ու դատապարտում են բոլոր նրանց, վորոնք համարձակվում են պայքարել ֆաշիստական կառավարության դեմ։

### ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆՆԵՐԻ ՅԵՐԵԽԱՆԵՐԻ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Սարսափելի յե ձերբակալվածների դրությունը, բայց ավելի սոսկալի յե նրանց և սպանված հեղափոխականների յերեխաների դրությունը։

**Սպանված յեվ ձերբակալված հեղափոխականների հարյուրավոր յեվ հազարավոր յերեխաները փողոց են նետված յեվ ֆաշիստական դահիճների կողմից սովամահության դատապարտված։**

**Վոչ վոք չի կարող ոգնել, վոչ վոք իրավունք չունի պատսպարել յեվ կերակրել նրանց։ Ով ոգնության է հասնում հեղափոխականի յերեխային, նրան սպառնում է բանտն ու սպանությունը։**

### ԻՆՉ Է ԳՐՈՒՄ ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏ ԸՆԿ. ԴԻՄԻՏՐՈՎԸ

*«Ցանկովի դահիճները, վոչ միայն հեղափոխականների գլուխներն են թռցնում, այլև մահվան են դատապարտում նրանց յերեխաներին:*

*Սպանված, բանտարկված, աքսորված և տարագրված բանվորների և գյուղացիների յերեխաները* **ցուրտ ձմռանը՝ մատնված են բախտի քմահաճույքին յեվ դատապարտված են անխուսափելի մահվան՝ քաղցից, ցրտից ու հիվանդություններից:**

*ՄՈՊՐԸ հաշվվում է գաղտնի կազմակերպություն և նրա աշխատանքին մասնակցողները դատապարտվում են մահվան: Անգլիական կանանց կոմիտեյի ուղարկած օգնությունը գրավման է յենթարկվել և հանձնվել Կարմիր Խաչին, վոր բաժանվի Սոֆիայի[2]) տաճարի պայթումից վընասված գեներալների և գնդապետների ընտանիքներին»:*

### ՅԵՐԵԽԱՆԵՐԻՆ ԿՈՏՈՐՈՒՄ ԵՆ

*Ներկայումս էլ շարունակվում են բուլղարական հեղափոխականների և նրանց յերեխաների սպանությունները:*

*1925 թվի նոյեմբեր ամսին Ալեկսանդրովո գյուղում սպանված է մի կոմունիստի ամբողջ ընտանիքը: Սպանվածների մեջ կային յերեխաներ 5-ից մինչև 10-ը տարեկան:*

*Իզուր չէ, վոր Ցանկովի դահիճներից մեկը հայտարարել է.—*

*«Անհրաժեշտ է սպանել և յերեխաներին, վորպեսզի վոչ վոք չմնա հայրերի վրեժը լուծելու համար»:*

**Տասնյակ բուլղարացի յերեխաներ, հյուծվում են բանտերում, հեղափոխական աշխատանքի համար:**

### ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ ԴՊՐՈՑՈՒՄ

*Կառավարությունը ամեն կերպ պայքարում է դպրոցում տարվող կոմունիստական ագիտացիայի դեմ:*

*Դեպքեր են պատահել, յերբ դպրոցներից հեռացրել են պիոներական կազմակերպության այն անդամներին, վորոնք տարածելիս են յեղել պատանեկան կոմունիստական «Սվետլինա» հանդեսը:*

*Պատանեկական կոմունիստական կազմակերպությունների ազդեցությունը դպրոցում թուլացնելու համար, կառավարությունն ամեն կերպ օգնում է բուրժուական պատանեկական կազմակերպություններին: Ամեն կերպ նա աջակցում է «յունակներին», սկաուտներին, «կարմիր խաչի միությանը»: Տալիս է նրանց դպրոցներում աշխատելու հնարավորություններ և այլն: Բացի դրանից կառավարությունը պարտադրել է բոլոր դպրոցներին այդ կազմակերպությունների թերթերն ու հանդեսները:*

*Չնայած դրան պատանեկական կոմունիստական խմբերի ազդեցությունը մի շարք դպրոցներում ուժեղ է:*

*Առաջ, թե գյուղական և թե քաղաքային շատ դպրոցներում կոմունիստ ուսուցիչներ կային ինարկե և պատանիներին կոմունիստական վոգով էյին կրթում: Կառավարության բոլոր ջանքերը, կոմունիզմը դպրոցներից արմատախիլ անելու համար, իզուր էյին անցնում: Բայց դրությունը դպրոցներում փոխված է 1923 թվի սեպտեմբերյան ապստամբությունից հետո:*

*Պատանեկական կոմունիստական խմբերը, ինչպես և բոլոր կոմունիստական կազմակերպությունները օրենքից դուրս են հայտարարվում:*

*Տասնյակ ուսուցիչ-կոմունիստներ և պատանեկական կոմունիստական խմբերի ղեկավարներ գազանորեն սպանվում են, ձերբակալվում կամ ստիպված են լինում թագնվել:*

### ԻՆՉՊԵՍ Է ՆԿԱՐԱԳՐՈՒՄ ՄՈՊՐԸ ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐԻ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ

*«Իր ցանկացած ժամին փաշիստը, սպան* **իրավունք ունեն մտնել դպրոց, հայհոյել յեվ մինչեվ իսկ թակել հասարակության առաջ ուսուցիչներին յեվ աշակերտներին:**

*Իրենց հեղափոխական աշխատանքի համար հարյուրավոր աշակերտ-ուհիներ դատի յեն յենթարկվել: Մի քանիսը նրանցից գնդակահարված են:*

*Դպրոցներում իշխում են հոգեվորականները: Ահա թե ինչ է ասել փաշիստների առաջնորդ Ցանկովը.—«դպրոցը, կրթված հոգեվորականության հետ ձեռք ձեռքի տված՝ հենվելով յեկեղեցու վրա, խոշոր դեր ունի կատարելու»:*

*Բայց համոզված ենք, վոր բուլղարական դպրոցը կդառնա այնպիսի դպրոց, ինչպիսին խորհրդայինն է:*

*Բանվորները և գյուղացիները Բուլղարիայում պարտված չեն, նրանք պատրաստվում են ավելի կազմակերպված կերպով պայքարելու և իրենց Հոկտեմբերը կատարելու:*

---

1) Գտիր քարտեզի վրա Բուլղարիան, վորոշիր նրա աշխարհագրական դիրքը:

2) Սոֆիան Բուլղարիայի մայրաքաղաքն է:

1925 թվին, մի խումբ հեղափոխականներ, պատարագի ժամանակ, վորին ներկա էյին բուլղարական մինիստրներ, իշխաններ, պետական բարձրաստիճան պաշտոնյաներ, գնդապետներ և այլն, պայթեցրին Սոֆիայի տաճարը:

# ԻՆՉՊԵՍ ԿԱՐԴԱԼ

### ԱՆԿԱՆՈՆ ԸՆԹԵՐՑԱՆՈՒԹՅԱՆ ՎՆԱՍՆԵՐԸ

Պիոներներից շատ քչերն են կանոնավոր ընթերցանությամբ պարապում։

Նրանք կարդում են առանց ծրագրի, առանց կարգ ու կանոնի։ Կարդում են այն, ինչ պատահում է։



Դեպքեր են լինում, յերբ պիոներները կարդում են իրենց համար բոլորովին անհասկանալի գրքեր։

Այդպիսի ընթերցանությունը, վոչ մի օգուտ չի տալիս։ Նա առաջ է բերում ցրվածություն, մրտքի շփոթ և ուրիշ վոչինչ։

### ԻՆՉՊԵՍ ԵՆ ԿԱՐԴՈՒՄ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

Հիմա տեսնենք թե ինչպես են կարդում պիոներները։

Շատերը կարդում են մթնշաղին, կամ պառկած, վորի շնորհիվ ընթերցողի աչքերը փչանում են, առաջ է գալիս գլխացավ և այլն։

Կան պիոներներ, վորոնք կարդում են ճաշի ժամանակ, դրանով փչացնելով թե իրենց և թե գրքին։ Կերակուրը լավ մարսելու համար, ճաշի ժամանակ՝ ամբողջ ուշադրությունը պետք է կենտրոնացնել միայն ուտելու վրա։

Այդ տեսակետից չի կարելի միաժամանակ ուտել և կարդալ։ Բացի դրանից, այդպիսի ընթերցանության ընթացքում գիրքը կեղտոտվում է, փչանում։

## ՀԱՐԿԱՎՈՐ Է ԿԱՐԴԱԼ ԾՐԱԳՐՎԱԾ ԿԵՐՊՈՎ

Ինչպես գիրք կարդալ, վորպեսզի նրանից ավելի շատ օգուտ ստացվի։

Առաջին՝ պետք է ծրագրով, ընտրությամբ կարդալ։ Ընթերցանության ծրագիր կարելի յե ստանալ գրադարանապետից, ուսուցչից, կամ պատրաստված ընկերոջից։

Հետո հարկավոր է վորոշել, թե որական քանի ժամ կարող ես կարդալ, վորպեսզի մոտավորապես ծրագրես, թե տվյալ ամսում ինչքան և ինչպիսի գրքեր ես կարդալու։

Ընթերցանության համար, այնպիսի գրքեր ընտրիր, վոր համապատասխանի քո մտավոր զարգացմանը։

Մի կարդա քեզ համար դեռ անհասկանալի գրքեր։

Բայց աշխատիր կամաց-կամաց բարդ գրքերի ընթերցմանն անցնել։



Սովորիր ինքդ վորոշել թե ինչպիսի գրքեր ես կարդալու։ Բաց ես անում գիրքը, կարդում ես մի քանի տող և յեթե տեսնում ես չկան բարդ խոսքեր, լեզուն քեզ հասկանալի յե, վերցրու և կարդա։ Այսպիսով կսովորես ինքդ քո ընթերցանության գրքերն ընտրել։ Հետո, միշտ նայիր գրքի վերնագրին։ Վերնագիրը բնորոշում է գրքի բովանդակությունը։ Յեթե ուշադրությամբ կարդաս վերնագիրը—կիմանաս թե ինչի մասին է խոսվում գրքում։ Գիրքը չպետք է կարդալ, լոկ կարդացած լինելու համար։ Այլ հարկավոր է ուսումնասիրել գիրքը, լավ ըմբռնել, և թե ինչ խնդիրների մասին է խոսվում նրա մեջ։ Դրա համար հարկավոր է դանդաղ կարդալ, մտածել



կարդացած ամեն մի խոսքի վրա։

Վորոշ դեպքերում նորից կարդա՝ կարդացածդ լավ յուրացնելու համար։

Յեթե գրքում քեզ անհասկանալի խոսքի կամ տեղի յես պատահել, անպայման պարզիր։ Դրա համար դիմիր կոլվարին, ուսուցչին, գրադարանապետին կամ բաց արա օտար խոսքերի բառարանը և բացատրությունն գտիր։

Ահա ընթերցանության հիմնական կանոնը։

### ՊԱՀՊԱՆԻՐ ԱՉՔԵՐԴ

Մի կարդա մթնաշաղին, կամ շլացուցիչ լույսի տակ. աշխատիր վոր կարդալիս լույսը գրքի վրա ընկնի ձախ կողմից։

### ՊԱՀՊԱՆԻՐ ԿՈՒՐԾՔԴ

Շատ մի կռանա ընթերցման ժամանակ—վորից փչանում են աչքերը, ներս ընկնում կուրծքդ, վատ են աշխատում թոքերը և քիչ արյուն գնում դեպի գլուխը։

### ՉՀՈԳՆԵՍ

Հաճախակի մաքրիր այն սենյա-

կի ոդը, վորտեղ կարդում ես: Մի հոգնիր, դադարիր ընթերցելուց, յեթե զգում ես, վոր արդեն հոգնել ես: Հոգնած գլխով կարդալը վոչ մի ոգուտ չի բերում:

Ահա ընդհանուր առմամբ այն գլխավորը, վոր կարելի յե ասել ընթերցանությամբ պարապելու մասին: Այս մի քանի տողերի մեջ չեր կարելի սպառել են նյութը, վորի մասին խոսեցինք:

Հետագայում պիոներները և բոլոր պատանիները թող հարցումներ տան ընթերցանության գործը կազմակերպելու մասին և խմբագրությունը ուրախությամբ կպատասխանի:

# ՊԱՏՐԱՍՏՎԵՆՔ ԳԱՐՆԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻՆ

Գարունը մոտենում ե:

Շուտով դուրս կգան գարնան առաջին ծաղիկները: Գարնան հետ միասին կսկսվեն դաշտային, բանջարանոցային աշխատանքները:

Պիոներական կոլլեկտիվը, մանավանդ գյուղում, մեծ աշխատանքներ ունի կատարելու: Անհրաժեշտ ե նախապատրաստվել: Որ առաջ պետք ե մտածել և ձեռք բերել կոլլեկտիվի համար մի կտոր հողամաս: Թեյև քաղաքում կոլլեկտիվը հանդիպի վորոշ դժվարությունների, բայց գյուղում այդ միանգամայն հնարավոր ե: Յուրաքանչյուր գյուղ, իր դպրոցին հատկացրել ե հողամաս. պիոներական կոլլեկտիվը կարող ե վերցնել այդ հողից մի վորոշ մաս մշակելու, այդ աշխատանքներին մասնակից անելով նաև դպրոցի աշակերտներին:

Կոմյերիտական, կուսակցական բջիջները և կոլլեկտիվին կցված համապատասխան հիմնարկներն անշուշտ աջակցելու յեն կոլլեկտիվին, վորովհետև հողային այդ աշխատանքն ավելի յե խորացնելու և ամրացնելու պիոներների մեջ աշխատանքային կոլլեկտիվիստական դաստիարակությունը, հանդես բերելով միաժամանակ յուրաքանչյուր պիոների ինքնուրույնությունը և ինքնա-





գործունեությունը: Բացի այդ, չե՞ վոր յուրաքանչյուր պիոներ պետք ե գիտենա հողը մշակել, ցանել և խնամել բույսերը: Իսկ այդ ամենը կարող ե սովորել նախապես ծրագրած և լավ հիմքերի վրա դրված կոլլեկտիվի բանջարանոցում:

### ԲԱՆՋԱՐԱՆՈՑԻ ՏԵՂԸ

Կոլլեկտիվներից շատերը կարող են ասել «չկա լավ հող, չունենք հարմարություն, հարմար տեղ»: Բայց այդպես չե:

Ամեն մի հող, վորն արևոտ ե, կարելի յե բանջարանոցի համար ոգտագործել և ստանալ լավ բերք:

Հարկավոր ե ուշադրություն դարձնել, վոր հողամասը ճահճոտ, շատ խորդ ու բորդ չլինի, և բանջարանոցը պաշտպանված լինի անձրևային հեղեղումներից, հյուսիսային ցուրտ քամիներից: Ցանկալի յե, վոր հողամասը մոտիկ լինի պիոներական ակումբին, կամ այն տեղին, ուր մշտապես հավաքվում ե կոլլեկտիվը:

### Ի՞ՆՉՊԵՍ ՄՇԱԿԵԼ ՀՈՂԸ

Բավական չե հող ունենալ, պետք ե մտածել նրան կանոնավոր կերպով մշակելու մասին:

Առանց մի քանի բանջարանոցային գործիքների, մանավանդ սկզբնական շրջանում, հնարավոր չե աշխատել և հողը մշակել: Կոլլեկտիվի ուժերով պետք ե ձեռք բերել բահ, փոցխ, ցնցուղ, փոքր դռավոր թիակ:

Կոլլեկտիվի յերկրորդ աշխատանքը պետք ե լինի հողը քարերից մաքրել, պարարտացնել և փափկեցնել:

Պարարտացնելու համար, ամե-



նից լավ և գործածել տավարի աղբը: Հարկավոր է աղբը հավասար կերպով շաղ տալ հողի յերեսը: Յեթե հողամասը մեծ է և շատ պինդ, ցանկալի յե վարել: Իսկ յեթե փոքր է հողամասը և փափուկ, պետք է բահով քանդել:

Հողը փափկացնելու համար քանդում են հետևյալ ձևով. բահը մինչև բունը խրում են հողի մեջ, հանում մի կտոր հող և շրջում այնպես, որ յերեսի մասն ընկնի տակը, իսկ տակի մասը բռնի հողի յերեսը: Շրջած հողը բահի սուր կողքերով պետք է կտրատել, կոշտերը փշրել:

Հողն աղբելուց և քանդելուց հետո, պետք է փոցխով հավասարեցնել և հավաքել կոշտերը ու բույսերի արմատները:




## ՄԱՐԳԵՐԸ

Այդ աշխատանքները կատարելուց հետո, պետք է հողամասը մարգերի բաժանել: Ցուրտ և խոնավ տեղերում մարգերը պատրաստում են հողի յերեսից բարձր, իսկ տաք և չոր տեղերում ցածր:

Մարգերի շնորհիվ բույսն ավելի հարուստ, փխրուն հող է ունենում, արևի ճառագայթներն ավելի լավ են տաքացնում հողը: Բացի այդ, մարգերի շնորհիվ հնարավոր է դասավորել և ըստ այնմ էլ ցանել ձեր տրամադրության տակ գտնըված սերմերը:

Սովորաբար մարգերը պատրաստում են $1\frac{1}{2}$ արշին լայնությամբ, բարձրությունը 5 վերշոկ, իսկ մարգերի միջի տարածությունը $\frac{1}{2}$ արշին:

Մարգերը պատրաստելիս պետք է նկատի ունենալ նաև մի կարևոր հանգամանք, այն է որ մարգերը պետք է ընկած լինեն հյուսիսից հարավ: Միայն այդ դեպքում մարգերի բոլոր մասերն արևի ճառագայթներից հավասար չափով կը տաքանան: Հետևապես բույսերը կը գտնվեն միատեսակ նպաստավոր պայմաններում:

Լավ պատրաստված և դասավորված մարգերից է կախված ձեր հետագա աշխատանքների հաջողությունը:

## ԻՆՉՊԵՍ ՋՈԿԵԼ ՍԵՐՄԵՐԸ

Բանջարանոցից հաջող բերք ստանալու համար, պետք է ցանել առողջ սերմեր: Լավ և առողջ սերմերը լինում են խոշոր, համեմատաբար ծանր և փայլուն գույնով: Վատ, փչացած սերմերը լինում են փոքր, թեթև, մուգ գույնի և կեղևը թառամած:

Ցանած բոլոր սերմերը չեն ծըլում, նրանից շատերն անպետք են և չեն ծլում: Յեթե ցանած 100 սերմերից 80-90-ը ծլում են, ուրեմն, այդ տեսակ սերմացուն լավ սերմացու պետք է համարել:

Սերմերի լավն ու վատը ջոկելու համար, կան շատ միջոցներ: Կոլեկտիվը կարող է հետևյալ պարզ փորձերը կատարել: Սերմերը դընել խոնավ թաղիքի մեջ, թողնել մի քանի օր տաք տեղում և հաշվել թե քանիսը չեն ծլում: Կարելի յե խմանալ և թեժ կրակի միջոցով: Յեթե կրակի վրա դցած սերմը դանդաղությամբ է այրվում, ծուխ չի արձակում, նշանակում է լավ սերմ չի: Իսկ յեթե կրակի վրա վեր ու վայր է թռչում և այրվելիս պայթում, նշակակում է լավ սերմ է և կարելի յե ցանել:

Վորքան էլ սերմն առողջ լինի, ցանելուց առաջ պետք է լավ լըվանալ:

## ԲԱՆՋԱՐԱՆՈՑՈՒՄ ՎՈՉ ՄԻԱՅՆ ՊԵՏՔ Է ԱՇԽԱՏԵԼ, ԱՅԼ ՅԵՎ ՊԵՏՔ Է ՍՈՎՈՐԵԼ

Անշուշտ կոլեկտիվը բանջարանոցից պետք է ստանա վորոշ օգուտ, վորը կկարողանա իր կարիքների համար գործադրել: Սակայն չպետք է մոռանալ նաև հաշվի առնել կատարված աշխատանքը և դիտողությունները:

Դրա համար ամեն մի պիոներ պետք է ունենա իր տետրը, վորտեղ գրի յէ առնելու այդ բոլորը: Օրինակ՝ յերբ սկսվեցին բանջարանոցի աշխատանքները, յերբ և ինչպես կատարվեց պարարտացումը, վոր բույսը յերբ ցանվեց: Վո՞ր բույսերը և վոր մարգերն ավելի լավ աճեցին: Գրի առած այդ դիտողությունները ձեզ հետագայում մեծ օգուտներ կտան:

Հուշատետրն իր հարցերով կազմելուց հետո՝ պետք է վորոշել թե բանջարանոցային ինչպիսի բույս պետք է ցանել, ավելի լավ օգուտ ստանալու համար:

Պիոներ-գյուղացենս





**Տ. ՄԱՐԳԱՐՅԱՆ**

# ԳՅՈՒՐԶԱ

(ըստ Նիկոլսկու)

Հայաստանի աչքի ընկնող օձերից է գիտական լեզվով այսպես կոչվող Vipera Lebetina (վիպերա լեբետինա) թունավոր, մեծ օձը, որն ապրում է թե Արարատյան դաշտավայրում և թե լեռնային Հայաստանում։

Տեղացի հայերն ու թուրքերն այս թունավոր մեծ օձին անվանում են գյուրզա և յաթաղան, որ նշանակում է քնկոտ օձ։

## ԳՅՈՒՐԶԱՅԻ ԱՐՏԱՔԻՆԸ

Գյուրզայի վիզը գլխի համեմատությամբ շատ բարակ է. գլխից մինչև պոչի ծայրը մեջքի վրայով ձգվում է ալիքանման մի շերտ։ Նրա պոչը կարճ, հաստ ու ծայրը բութ է։ Բացի մանր ատամներից, նրա վերին ծնոտի վրա գտնվում են մնամեջ, ծայրերը սուր յերկու ատամներ, որոնցով նա խայթում է։ Վերոհիշյալ ալիքանման շերտից դատ գյուրզայի մարմնի վերևի ևներքևի մասերում կան մարմնի գույնից ավելի մուգ գույնի բծեր։ Սովորաբար գյուրզայի մարմնի վերևի մասը լինում է մոխրականաչավուն և մուգ մոխրագույն, փորը սպիտակ, պոչի ծայրի ներքևի մասը դեղին։ Պատահում են նաև սև գույնի գյուրզաներ։

Համեմատաբար գյուրզայի մարմինը բավական հաստ ու յերկար է։ Հայաստանում պատահում են 1420 միլլիմետր յերկարությամբ գյուրզաններ. եգն ավելի մեծ է լինում, քան արուն։ Եգն արուից տարբերվում է իր ավելի յերկար ու բարակ պոչով։

Յերևանում Հայաստանի կենտրոնական Մանկավարժական թանգարանում կան 1000 և 1455 միլլիմետր յերկարությամբ գյուրզաներ, որոնց բռնել են Քանաքեռի և Յերևանի մոտակա շրջակայքում։

## ԳՅՈՒՐԶԱՅԻ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՄԻՋԱՎԱՅՐԸ

Գյուրզան ապրում է հյուսիսային Աֆրիկայում, Միջերկրական ծովի մի քանի կղզիներում, Սիրիայում, փոքր Ասիայում, Անդրկովկասում, Պարսկաստանում, Միջագետքում, Աֆղանիստանում, Բելուջիստանում, Կաշմիրում, Անդրկասպյան շրջանում։

Գյուրզայի լավ ուսումնասիրելու գործում մեծ աշխատանք է թափել Կովկասի բնության քաջ տեղյակ, հայտնի բնագետ Ա. Բ. Շելկովնիկյանը։

## ԳՅՈՒՐԶԱՅԻ ԿՅԱՆՔԸ

Ա. Բ. Շելկովնիկյանի դիտողությունների համաձայն գյուրզան ավելի շատ սիրում է անջուր դաշտավայրերը։ Նա ապրում է նաև քարքարոտ լեռներում և ձորերում, որտեղ ապրում են լեռնահավեր, ուրիշ թռչուններ, փոքր կենդանիներ, նապաստակներ։ Ահա այս թռչուններով ու կենդանիներով էլ կերակրվում է գյուրզան։ Գյուրզան յերբեմն պատահում է մարդկանց բնակավայրերի մոտ։ Նրան պատահում ենք բանջարանոցներում և այգիներում։ Հաճախ գյուրզան սողում է հավարները և որսում է ճուտիկներին ու հավերին։ Թեև գյուրզան ջուր չի որոնում, բայց ջրից էլ չի վախենում։ Ա. Բ. Շելկովնիկյանը գյուրզային տեսել է ջրում լողալիս և ուրիշ անգամ էլ նրան բռնել է ջրում։

Գարնանը գյուրզան յերևում է մարտի վերջերին և ապրիլի սկիզբներին։ Ամառը գյուրզաները շատ քիչ են յերևում, որը հաստատում է տե-

ղացների այն կարծիքը, թե ամառվա շոգ ամիսներին, գյուրզաները մտնում են բներ՝ քընելու։ Օգոստոսի վերջերին, սեպտեմբերին և նույն իսկ հոկտեմբերին նրանք նորից հաճախ են պատահում։

Իր կենցաղով, ինչպես շատ թունավոր օձեր, գյուրզան գիշերային օձ է։ Գիշերվա ընթացքում նա բավական արագաշարժ ու ճկուն է։ Այս է պատճառը, վոր գյուրզայի խայթման բոլոր դեպքերը պատահում են վերջալույսից հետո։ Ցերեկը գյուրզան պահվում է բներում, քարերի տակ, ժայռերի ճեղքերում։ Ցերեկվա ընթացքում շատ դանդաղաշարժ է ու թույլ։ Յեթե այդ ժամանակ բռնեք նրա պոչից և կախեք, նա շատ անզոր շարժումներ է կատարում օդի մեջ, յեթե այդ դրությամբ նրա մոտեցնեք վորևե արկղի կամ անոթի, նա իր կամքով կմտնի այդտեղ։ Ցերեկը յեթե հարձակվենք նրա վրա, նա կփախչի։ Յեթե իր թագստի տեղում նրան անհանգստացնեք, նա ուժգին ֆշշացնում է և ավելի խորն է մտնում։ Յեթե դուք շարունակեք հալածել նրան՝ քարերի տակով նա անձայն կը տեղափոխվի մեկ ուրիշ տեղ։ Իսկ, յերբ այլես իր թագստում չի կարողանում մնալ նա դուրս է գալիս և առանց մարդու վրա հարձակվելու՝ տեղափոխվում է մեկ ուրիշ վայր ու պահվում է։ Սակայն յերբ գյուրզան չի կարողանում մարդու հետապնդումից ազատվել, այդ դեպքում միայն նա իր մարմնի առջևի մասով հարձակվում է մարդու վրա։ Ցերեկը նրա դանդաղաշարժությունը հնարավորություն է տալիս մարդկանց բռնել գյուրզային։ Զարմանալի յե, վոր գյուրզան այս դեպքում էլ, կարծես, տեղի յե տալիս, և նույնիսկ ավելին՝ անձնատուր է լինում մարդուն։

### ԻՆՉՊԵՍ ԲՌՆԵԼ ԳՅՈՒՐԶԱՅԻՆ

Գյուրզային կարելի յե բռնել այսպես՝ ճարպիկությամբ ու զգուշությամբ փայտ դնել նրա վզին, վորից անմիջապես հետո վոտով կոխում են նրա պոչը, վորպեսզի պոչով նա չը կարողանա պաշտպանվել, ազատվել ու մարդուն խայթել։ Հետո փայտով ամուր սեղմել կոկորդը նրան թուլացնելու համար։ Ազատ ձեռքի մեծ մատով և ցուցամատով բռնել նրա կոկորդն և ամուր սեղմել, իսկ մյուս ձեռքով՝ պոչը։ Բայց պետք է զգույշ լինել, չը խաբվել նրա թուլությունից և նրան ձեռքերում թույլ պահել։ Տանը չը պետք է նրան բաց թողնել, ըստ յերևույթին նա մեռած չե, պետք է իսկույն (առաջ պոչը, հետո գլուխը) ձգել անոթի մեջ ու բերանը ծանր իրով ծածկել։ Անոթի մեջ դուք կը տեսնեք, թե ձեր ձեռքում քիչ առաջ թուլացած գյուրզան անմիջապես շտկում է իր մարմինը և հարձակողական դիրք ընդունում։ Յեթե դուք մոտենաք, զրգռեք, նա ուժգին կը ֆշշացնի ու կը հարձակվի ձեզ վրա։ Նույն իսկ յեթեր տալուց հետո՝ դարձյալ անոթի բերանը պետք է ամուր ծածկել։

Չը նայած իր մարմնի ծանրության ու դանդաղաշարժության՝ գյուրզան հաճախ սողում է ծառերի վրա՝ թռչունների ձագեր ու ձվեր վորսալու։

### ԳՅՈՒՐԶԱՅԻ ԽԱՅԹՈՑԸ

Համարյա քիչ բացառությամբ գյուրզան խայթում է մարդկանց վոտքը, յերբ յերեկոյան գնում են դաշտ, այգի՝ անասուններին տուն բերելու։ Յերբեմն գյուրզայի խայթոցից մահ է առաջանում. խայթելուց հետո անտանելի կերպով ցավում և ուռչում է խայթած տեղը։ Հիվանդը շատ դժվարությամբ և ծանր է շնչում, զարկերակն արագ է բաբախում, հիվանդի աչքերը խավարում են, նա հաճախ ջուր է պահանջում և գանգատվում է, վոր խայթած տեղը ու յերբեմն ամբողջ մարմինը սաստիկ ցավում են։ Ծանր դեպքում մի քանի ժամից հետո հիվանդը մեռնում է։

### ԻՆՉՊԵՍ ԵՆ ԽԱՅԹԸ ԲԺՇԿԵԼ

Տեղացի սափրիչները գյուրզայի խայթածը բժշկում են հետևյալ միջոցով. խայթած տեղի շուրջը կամ հենց գյուրզայի ատամների հետքերի վրա ածելիով կտրվածքներ են անում և վերքի վրա արյուն ծծող բանկաներ դնում։ Բուժման այս միջոցը բավական լավ հետևանքներ է տալիս։ Համարյա բոլոր հիվանդներն առողջանում են։ Իսկ Ա. Բ. Շելկովնիկյանը գյուրզայի խայթածը բուժում է այսպես՝ նա խայթած մասում կամ հենց ատամների հետքում սրսկում է $2^{0}/_{0}$ մարգանաթթվուտային կալի և հիվանդին ընդունել է տալիս մեծ դոզայով սպիրտ։ Ըստ նրա ասածների, սրա հետևանքները լինում են շատ փայլուն. բոլոր հիվանդներն էլ բժշկված են։ Թմրած ժամանակ գյուրզան խայթել է Ա. Բ. Շելկովնիկյանին։ Վերոհիշյալ միջոցով նա իրեն բժշկել է. գյուրզայից տառապում են նաև ընտանի կենդանիները։ Հաճախ գյուրզայի խայթոցից նրանք տեղն ու տեղը փայտանում են։ Ըստ Նեստերովի հաղորդածների, մայիսի վերջերին Արդվինի մոտ գյուրզան խայթում է վորսորդական շանը. 15 րոպեյից հետո շունը մեռնում է։

Համաձայն Ա. Բ. Շելկովնիկյանի տվյալների փակված գյուրզան յերկար չի ապրում։ Ըսկզբում նա շատ գազազում, ֆշշացնում և հարձակվում է ցանցին կամ ապակե անոթին մոտեցողների վրա։ Բայց շուտով նա անտարբեր է դառնում դեպի ամեն ինչ, էլ ազատվելու վոչ մի փորձ չի անում ու կծիկ դառնալով՝ անշարժ պառկում է։ Վանդակում նա վոչինչ չի ուտում։

# ԱՆԱՊԱՍՏԱՆ ՅԵՐԵԽԱՆԵՐԸ ՅԵՎ ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

Պիոներական կազմակերպության խնդիրներից մեկը հանդիսանում է փողոցներում թափառող անապաստան յերեխաների կազմակերպումը։

Ո՞վքեր են այդ անապաստան յերեխաները։

Նրանք մեծ մասամբ պատերազմներում և քաղաքացիական կռիվներում զոհ գնացած աշխատավորների, բանվորների և գյուղացիների յերեխաներն են։ Այդ յերեխաները զրկվելով իրենց ծնողներից, այսօր անտուն ու անտեր թափառում են քաղաքների փողոցներում, մի կերպ պահելով իրենց անմխիթար գոյությունը։

Խորհրդային կառավարությունը, ամեն կերպ աշխատում է պատսպարել նրանց պետական մանկատներում։ Բայց ելի անապաստան յերեխաներից շատերը մանկատներում չեն տեղավորված։ Յեթե հաշվենք, թե Հայաստանում ինչքան անապաստան յերեխաներ կան, կը տեսնենք, վոր նրանց թիվը մոտավորապես 4000-ի յե հասնում։



Անդրկովկասի խորհուրդների կենտգործկոմի նախագահ ընկ. Ցխակայան գնում է Յերևանի հիդրոկայանը տեսնելու։

Պիոներական կազմակերպությունը չպիտի մոռացության տա անապաստաններին։

Պիոներական կոլլեկտիվները պետք է աշխատեն իրենց հավաքույթներին մասնակից դարձնել նաև անապաստաններին։ Այսպիսով հնարավոր կլինի կապել նրանց պիոներական աշխատանքներին։

Ամեն մի պիոներ իր պարտքը պետք է համարի կապվել անապաստան յերեխայի հետ, հասկացնել նրան պիոներական կազմակերպության նպատակները։ Պիոները պետք է համոզի նրան՝ գնալու մանկատուն, հասկացնելով փողոցային կյանք վարելու վնասները։

Անապաստան յերեխաների մեջ աշխատելը — դա պիոներական կազմակերպության առաջ կանգնած կարևորագույն խնդիրներից մեկն է հանդիսանում։

Չորս հազար անապաստան յերեխաները պիտի լինեն պիոներական ազդեցության տակ, նախքան նրանց մանկատուն անցնելը։

Պիոներական կոլլեկտիվներ, դեպի աշխատանք։

Վռամ

# ԻՆՉՊԵՍ ԿԼԻՇԵ ՓՈՐԵԼ ԼԻՆՈԼԵՅՈՒՄԻՑ

Լինոլեյումից կլիշե պատրաստելը շատ ծախսեր և դժվարություններ չի պահանջում։ Ամեն



մի պիոներ հեշտությամբ կարող է պատրաստել։

Լինոլեյումը պատրաստում են խցանի փայտից և ուրիշ նյութերից։ Նրան գործածում են գըրատախտակ պատրաստելու և հատակները ծածկելու համար։

Կլիշեներ փորելու համար անհրաժեշտ է ունենալ 1. սուր ծայրով դանակ և 2. տափակ ծայրով լավ սրած բիզ։

Նկարից կլիշե պատրաստելու համար պետք է վերցնել կապույտ (փոխադրող) թուղթը, և յերեսի կողմով դնել նկարի թերթի տակ, վորից հետո նկարի վրայից ըսկսում են գծել, վորպեսզի նկարը դուրս գա հակառակ կերպով, թերթի հետևյալ յերեսի վրա։ Հետո պետք է վերցնել լինոլեյումը և նրա վրա սոսինձով կպցնել նկարը թարս կողմով։

Լավ չորացնելուց հետո՝ հար-



կավոր է անցնել փորելուն։ Փորելիս պետք է նկարի սև մասերը (գըծեր) թողնել իսկ սպիտակները հանել։ Ուղիղ և յերկար գծերը

պիտի կարել դանակով, իսկ փոքր մասերի համար՝ գործածել բիզը։

Բոլոր այսպիսի մասերը կարելուց հետո՝ կլիշեն պատրաստ է։ Հարկավոր է նրան մեխել յերկու սանտիմետր հաստություն ունեցող տախտակի վրա։ Տախտակը պետք է լավ և հարթված լինի։ Պետք է մեխերը խփել այնպես, որ կլիշեն տպելիս մեխերի գլուխները չտպվեն։

Այսպիսի հասարակ ձևով կարելի յե պատրաստել լինոլեյումից կլիշե։

Մեր պատկորները կարող են իրենց թղթակցությունները տպագրել իրենց պատրաստած կլիշեների հետ միասին։

«Պիոներ կանչ»-ի խմբագրությունն ուրախությամբ կընդունի լինոլեյումից պատրաստված կլիշեներ։

Պատկոր՝ Ս. Բզնունի

## ՊԻՈՆԵՐ ՍԵԹՈՆ

Ձմեռ[illegible]ին ցուրտ ու մառախլապատ գիշերից մեկն էր։

Արև, [illegible] խնայել էր իր ձմե-[illegible] ապակյթները և մայր [illegible] ն փաթիլները մեկիկ-մեկիկ, [illegible] պտտվում և գլգլում էին սառած ու ամրացած գետնին։

Գյուղի ծայրի փոքրիկ խրճիթում էլ տխուր էր ու տաղտկալի։ Պառավ Գյուլնազը նստած էր մենակ ու տխուր ճախարակ էր մանում. ձեթի ճրագը հազիվ էր լուսավորում խրճիթի մի անկյունը։ Ճախարակը տքալով ու հևալով պտտվում էր և խառնվելով Գյուլնազ նանի տխուր յերգին դուրս էր թռչում խրճիթի պատի ճեղքվածքներից ու գնում հեռու-հեռու։

Հանկարծ դուռը յետ բացվեց և ներս վազեց ցրտից կապտած 13 տարեկան պիոներ Սեթոն։ Նա ձեռները դրել էր պատառոտված արխալուղի մեջ, փափախը քաշել էր ականջները, իսկ բաց ոտները ցրտից փշաքաղվել էին։ Նրա ներս մտնելով՝ կարծես խրճիթն արթնացավ, նրա մանկական ախորժելի ձայնն իսկույն տարածվեց խրճիթում։ Սեթոն ուրախ է. ուշք չի դարձնում ցրտին, քաղցին, չէ՞ որ ինքը պիոներ է, պետք է տոկուն լինի։ Մանավանդ այդ օրը նա շատ ուրախ էր. կոլլեկտիվի հավաքույթին նա միաձայն խմբկոլի անդամ էր ընտրվել։ Իսկ հիմա տուն գալով ուզում էր շուտով նյութ գրել, վորովհետև պատի թերթի համարը կիրակի լույս էր տեսնելու։

Նա գնաց իր անկյունը, վորտեղ դրած էր մի փոքրիկ սեղան, վորի վրա դասավորված էին նրա գրքերն ու տետրակները և մի մատիտ։

Նա մի կտոր մաքուր թուղթ վերցրեց և մատիտ։ Նայեց մատիտին, կեսից շատը մաշվել էր, մատիտը վերջանալու վրա յեր, նա տխրեց մի քիչ, մտածեց թե արդյոք մինչև մատիտի վերջանալը Գյուլնազ նանը փող կունենա, վոր նորը գնի։ Մի քիչ մտածեց, բայց ժամանակը թանգ էր, հանկարծ ձեթը կը հատներ ճրագը կը մարեր և չէր կարողանա նյութ գրել։



Կոլլեկտիվի խորհրդի հավաքույթը

Սեթոն նստեց տախտակե նստարանին և մտածում էր ինչ վերնագրով նյութ գրի և միաժամանակ սուլում էր իր ամենասիրած յերգը «Խարույկով խարկվեք»։

Վերջապես գտավ. «Պիոներ գնահատիր ժամանակդ»։

Նյութը շատ հաջող էր, անփոփոխ զրվեց թերթում։ Այդ նրան խրախուսեց և այդ օրվանից սկսեց յեռանդով աշխատել։ Կոլվարն ամբողջ կոլլեկտիվի առաջ գովեց Սեթոյին։

Սեթոն յերջանիկ էր։

Միայն մի միտք էր նրան տանջում ու տխրեցնում, այդ նրա պառավ տատի դրությունն էր, վոր որ ըստ որե ծերանում ու առողջությունը կորցնում էր, բայց և այնպես շարունակում էր աշխատել իր սիրելի թոռնիկի համար։ Սեթոն մտածում էր։ «Ա՜խ յեթե յես մեծ լինեյի, կոմյերիտմիության մեջ կմտնեյի և գյուղում մի գործ կանեյի ու չեյի թողնի, վոր տատիկս չարչարվի»։

Յեվ ամեն գիշեր, յերբ Սեթոն պառկում էր քնելու, միշտ մտածում էր այդ մասին։ Բայց 3 տարի քիչ բան չե ծեր տատի համար, նա ինչքան պիտի սպասեր, վոր ինքը մեծանա, մտածում էր Սեթոն։

Բայց մեկ էլ յերբ կիսաքուն էր, նրան թվում էր թե ինքը կոմյերիտական է, աշխատում է և տատիկն այլևս չի չարչարվում և նա հանգիստ ու յերջանիկ քնում էր։

Բարի գիշեր պիոներ Սեթո։

Պատկոր՝ ՍԵՎԱՆ



Տպարանից «Պիոներ կանչ»-ի №-ները տանում են խմբագրատուն

## ՄԵՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ

Յերևանի «Սմիչկա» անվան կոլեկտիվի յերկու ողակները միասին գնացին տպագրական տրեստի I տպարանն ուսումնասիրելու։ Ուսումնասիրությունն անցավ հաջող։ Տպարանում տեսանք տառերի զանազան տեսակները, տպագրիչ մեքենաներ և մոտորը, որ աշխատեցնում եր այդ բոլոր մեքենաներին։ Ցանկալի յե, որ բոլոր կոլեկտիվների ողակները գնան և ուսումնասիրեն տպարանի աշխատանքները։

Ա. Շահբազյան

## ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒՄ ԵՆՔ ԳՅՈՒՂ-ՀԻՄՆԱՐԿՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ

Յեղարլու գյուղի պիոներական յերկու կոլեկտիվների խորհուրդները վորոշել են ծանոթանալ գյուղհիմնարկների աշխատանքին (գյուղխորհուրդ, փոկ և այլն) այդ աշխատանքը կունենա անկասկած իր արդյունքները։

Պիոներները կծանոթանան թե ինչ է անում այս կամ այն հիմնարկությունը գյուղում։

Բ. Պողոսյան

## ՏՎԵՔ ՀԱՄԱՊԱՏԱՍԽԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հինգ ամիս է ինչ գոյություն ունեն մեր փորպոստները։

Բայց դեռ շատ շատերը նրանցից լավ չեն պատկերացնում իրենց աշխատանքները։ Այդ բացը լրացնելու համար հարկավոր է հրատարակել փորպոստների աշխատանքը լուսաբանող գրականություն։

Պիոներ հրատարակչություն, դեպի գործ։

Թոսղոր

## ԻՆՔՆԱԶԱՐԳԱՑՄԱՆ ԽՄԲԱԿԻ ՄԻՋՈՑՈՎ

Մեր փորպոստները, միշտ աշխատում են անկազմակերպ աշակերտության մեջ ուժեղացնել պիոներական կազմակերպության ազդեցությունը։ Սակայն գործնականորեն այն ուղղությամբ շատ քիչ աշխատանք է տարված։

Այդ նպատակով 7-ամյա № 7 դպրոցի փորպոստը և աշակերտական ինքնավարությունը ԼԿՅԵՄ բջիջի անմիջական ղեկավարությամբ կազմակերպել է ինքնազարգացման խմբակ, որին պետք է մասնակցեն մեր դպրոցի աշակերտները։ Այդ ինքնազարգացման խմբակում, պետք է արծարծվեն զանազան պիոներական-կոմյերիտական խնդիրներ, որի միջոցով կը կարողանանք մեր ազդեցությունը տարածել աշակերտների վրա և ծանոթացնել նրանց պիոներական աշխատանքների հետ։

Մեր բոլոր փորպոստները պետք է կազմակերպեն ինքնազարգացման նման խմբակներ, աշխատելով ամեն կերպ աշակերտներին մասնակից դարձնել խմբակային աշխատանքներին։

Պասկոր՝ Նազուշ



Պիոներները կապում են «Պիոներ կանչ»-ը գավառները ուղարկելու համար



Պիոներների յերթը Յերևանում

# ԽԱՂԸ ՊԻՈՆԵՐԻ ԱՆԲԱԺԱՆ ԸՆԿԵՐՆ Է

Մեզ մոտ քիչ են այն կոլլեկտիվները, վորոնք գիտեն ոգտավետ խաղեր կազմակերպել։ Շատերը կազմակերպում են այնպիսի խաղեր, վորոնք անոգուտ են և նույնիսկ վնասակար։

Խաղերն ընտրելիս առաջնակարգ տեղ պիտի տալ շարժական, մասսայական խաղերին։ Շարժական խաղերի ժամանակ մարմնի բոլոր մասերը՝ մըկանները, կաշին, սիրտը, թոքերը, մարսողության որգանները գործում են լարված, համաչափ, ինչ վոր չափազանց նպաստավոր ազդեցություն է թողնում որգանիզմի վրա։

Շարժական, մասսայական խաղերը զարգացնում են նաև մտածողությունը, պիոների ունակությունը, կարգապահությունը, համբերությունը և վերջապես ավելի խորացնում են կոլլեկտիվիստական դաստիարակությունը։

Չպետք է սկսած խաղը կիսատ թողնել և նորը սկսել, հարկավոր է խաղը ամբողջությամբ վերջացնել։ Ղեկավարը պիտի հետևի, վոր խաղացողները ճշտությամբ գործադրեն խաղի որենքները։

Ներքևում բերած հոկտեմբերիկների և պիոներների խաղերը կարելի յե կազմակերպել առանձին ոդակներով և ամբողջ կոլլեկտիվով։

## ԿՈՒՅՐԵՐԸ ՇՐՋԱՆԱԿԻ ՄԵՋ

Գծվում է հինգ քայլ շառավիղով մի շրջագիծ։ Հոկտեմբերիկները կանգնում են շրջագծից քսան քայլ հեռու, ուղիղ գծով յերեսները դեպի շրջագիծը։ Այնուհետև հերթով յուրաքանչյուր հոկտեմբերիկ, աչքերը փակ պետք է մեկ անգամ շրջվի իր տեղում և քայլի դեպի շրջագիծը ու մտնի շրջանի մեջ։

## ՅԵՐԿՈՒ ԸՆԿԵՐ

Բոլոր հոկտեմբերիկները ձեռքերը բռնած կանգնում են շրջան։ Դուրս են գալիս շրջանից յերկու հոգի՝ մեկն լինում է ասեղ, մյուսը թել։ Ասեղը արագ վազում է հոկտեմբերիկների արանքով, մեկ մտնելով շրջանի մեջ, մեկ դուրս գալով նրանից։ Իսկ թելն ուշադիր հետևում է ասեղին և աշխատում է անպայման անցնել ասեղի ճանապարհով և բռնել նրան։ Յեթե բռնեց՝ խաղը վերսկսվում է և դուրս են գալիս նորից յերկու հոգի։ Խաղն այսպես շարունակվում է, մինչև վոր բոլորն էլ դառնում են ասեղ կամ թել։

## ԳՈՐՏԵՐԸ

Խաղացողները կանգնում են շարք, մեկը մյուսից յերկու քայլ հեռու։ Տրված ազդանշանի (սուլիչով, կամ մեկ յերկու, յերեք ասելով) համաձայն, բոլոր հոկտեմբերիկները ձեռները դնում են կողքերին և նստում վոտների թաթերի վրա (կքանիստ)։ Այդ դրությամբ բոլորը միասին գորտի պես կըռ-կըռալով քայլում են նախորոք վորոշված տեղը, վորը 15—20 քայլից ավել չպետք է լինի։ Այն հոկտեմբերիկները, վորոնք ճանապարհին վայր կընկնեն, համարվում են խեղդված գորտեր և դուրս են գալիս շարքից։

## ԲՌՆԻ՛Ր, ՅԵԹԵ ԿԱՐՈՂ ԵՍ

Հոկտեմբերիկները ձեռքերը բռնած կազմում են շրջան։ Խաղացողներից մեկի աչքերը փակում են։ Այնուհետև նշանակում են մեկին, վորին պետք է բռնի խաղացողը. խաղը սկսվում է ազդանշանի համաձայն։ Աչքերը կապած հոկտեմբերիկը, մեկ-մեկ մոտենում է շրջան խաղացողներին և ըսկսում ձեռքերով շոշափել։ Յերբ մոտենում է նրան, վորին պետք է բըռնի, բոլորը ծափ են տալիս, հոկտեմբերիկն իսկույն փախչում է, վորին հետևում է աչքերը կապած հոկտեմբերիկը։ Յեթե բռնեց՝ խաղը վերսկըսվում է։

## ԱՐՁԱՆ

Խաղացողները կանգնում են շրջան և իրար գցում ձեռի գնդակը (գնդակը կարելի յե պատրաստել մի փոքր տոպրակից, մեջը լցնելով բուրդ, կամ մանր ավազ)։ Այն հոկտեմբերիկը, վորը չի կարողանում բռնել գնդակը, կանգնում է անշարժ՝ այն դիրքով, ինչ դիրքով վոր աշխատում էր գնդակը բռնել։

Այդպես կանգնում են մինչև վոր բոլորը դառնում են արձան, մեկի բացառությամբ։ Այդ հոկտեմբերիկը, գընդակը գցում է արձաններին, վորոնք բռնելով գնդակը կենդանանում են և խաղը նորից վերսկսվում է։

## ԴԱՏԱՐԿ ՏԵՂ

Խաղացողները ձեռքերը բռնած կազմում են լայն շրջան։ Հոկտեմբերիկներից մեկը, վազում է շրջանի հետևով, և խփում է կանգնածներից մեկն ու մեկին։ Հարված ստացողն իսկույն դուրս է գալիս տեղից և սկսում է դարձյալ շրջանի հետևից հակառակ կողմը վազել։ Վազողներն իրար հանդիպելով կանգնում են, մեկը մյուսի ձեռին յերեք անգամ խփում և նորից շարունակում վազել։ Ով շուտ է հասնում, նա բռնում է դատարկ տեղը շրջանում։ Իսկ դուրսը մնացողը, խա-



Պիոներների յերթը Յերևանում

գը շարունակում ե:

### ՅԵՐԿԱԹՈՒՂԻ

Բոլոր խաղացողները կանգնում են իրար յետև, ձեռքերով բռնում են իրար մեջքից, այդպիսով կազմում են յերկաթուղու գնացք: Առաջ կանգնած հոկտեմբերիկը համարվում ե մեքենավար, իսկ ամենից հետև կանգնածը՝ կոնդուկտոր, վորը ձեռքին ունի զանգ:

Յերկու անգամ զանգ տալուց հետո, մեքենավարը սուլում ե և գնացքը դըղրդացնելով, փնչացնելով շարժվում ե առաջ: Ճանապարհին, մինչև հաջորդ կայարանը հասնելը, կամուրջը քանդված ե լինում, վորի համար կոնդուկտորը կանչում ե «գնացքը խորտակվեց»: Բոլորը բաց են թողնում իրար և վազում: Մեքենավարը և կոնդուկտորը պետք ե աշխատեն բռնել փախչողներին: Յերբ բացի յերկուսից բոլորին բռնում են, նրանցից մեկը դառնում ե մեքենավար, իսկ մյուսը՝ կոնդուկտոր և խաղը նորից վերսկըսվում ե:

### ԵՃ—ԵՃ

Խաղացողները շրջան կազմած պըպըզում են: Մեկը կանգնում ե շրջանի մեջ և գնդակով խփում ե նրան, վորը կանգնում ե «եճ-եճ» ասում և նորից արագ նստում:

Պետք ե խփել այն ժամանակ, յերբ կանգնած ե: Յերբ բոլորը սպանվում են, խաղը նորից վերսկսվում ե:

## ԻՆՉ ԿԱՐԴԱԼ

**Մ. Ք. ՄԵԴՎԵԴԵՎԱ — ՏԵՐ-ՊԵՏՐՈՍՅԱՆ.—Հեղափոխության հերոսը (ընկ. Կամո) Լեպեշինսկու հառաջաբանով.—Պետհրատ 1925 թիվ. գինը 25 կ.**

Այս գրքում նկարագրված ե հայտնի հեղափոխական Կամոյի հերոսական կյանքն ու գործունեությունը: Կամոն հին բոլշևիկ ե, իր ամբողջ կյանքը նվիրած հեղափոխության գործին: Նրա կատարած հեղափոխական աշխատանքը անհավատալի, հեքիաթային ե թվում: Կամոն կարողացել ե ամեն դժվարությունների ու արգելքները հաղթահարել, սարսափի ու զայրույթի մեջ ե պահել ցարի վոստիկաններին ու ժանդարմներին:

Շատ օրինակներ կարող են վերցնել պատանի պիոներները ընկ. Կամոյի հերոսական կյանքից:

Թող բոլոր պիոներները կարդան այդ գիրքը:

**Ա. ՇԱՀԳՅԱԼԴԻ.—Գյուղացին ու բանվորը ցարի ժամանակ. Պետհրատ 1925 թ. գինը 8 կ.**

Ընկ. Շահգյալդյին այս գրքում շատ պարզ ու հասկանալի լեզվով պատմում ե, թե ինչպիսի պայմաններում եյին ապրում բանվորը ու գյուղացին ցարի ժամանակ:

**Պ. ԶԱՄՈՅՍԿԻՅ—Նամակ Լենինին. պատմվածք.—Պետհրատ 1925 թ. գինը 25 կ.**

**Ն. ԼԵՇՉԻՆՍԿԻՅ.—Աշխատանք պապիկը.—(հին բոլշևիկի պատմած հեքիաթը) Պետհրատ 1925 թ. գինը 25 կ.**

**ԴԱՐԲԻՆՅԱՆ.—Մուրճիկն ու Մանգաղիկը (փոխադրություն) հեքիաթ. Պետհրատ 1926 թ. գինը 10 կ.**

## ՄԵԾԱՀԱՍԱԿ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**ՋՈՆ ՌԻԴ.—Տասը օր, վոր ցնցեցին աշխարհը. Պետհրատ 1925 թ.**

Ամերիկական կոմունիստ և թղթակից Ջոն Ռիդը Հոկտեմբերյան օրերին Ռուսաստանում ե յեղել, նա իր այդ գրքում գեղեցիկ ու հետաքրքիր կերպով պատմում ե Հոկտեմբերյան հեղափոխության առաջին շրջանը, **են տասը օրերը, վոր իրոք ցնցեցին ամբողջ աշխարհը:**

Ցանկալի յե, վոր հասակավոր պիոներները կարդան այդ գիրքը:



# ՇԱՐԺԻՐ ՈՒՂԵՂԴ !

*ՌԵԲՈՒՍ № 4*



## ԼՈՒԾՈՒՄՆԵՐ

### ՌԵԲՈՒՍ № 3

*Պիոներ բաժանորդագրվիր «Պիոներ» հանդեսին։*

### ՌԵԲՈՒՍ № 4

*Մեծ հոկտեմբերի զավակներն ենք մենք։*

*ՌԵԲՈՒՍ № 5*



### № 3 ՅԵՎ № 4 ՌԵԲՈՒՍՆԵՐԸ

*Լուծեցին հետևյալ ընկերները՝ Ա. Կիրակոսյանը, Մ. Գասպարյանը, Գ. Հախումյանը, Կարապետյանը, Խ. Հովսեփյանը, Գ. Հովակիմյանը Ա. Ալեքսանյանը, Մ. Շահբազյանը, Գ. Մելքոնյանը Վ. Սիմոնյանը, Կ. Բզնունի և ուրիշները։*

# ԳԵՐՄԱՆԱՑԻ ՊԻՈՆԵՐ ՃԱՐՊԻԿ ՖՐԻՑԸ





1

*Ֆրիցը պլակատ պիտի խփեր,*
*Բայց շուցմանն է զգաստ հսկում.*
*Զորանում է շրեշը թղթի,*
*Ֆրիցը իզուր է մտածում*

2

*Բայց մեր Ֆրիցը ճար կգտնի,*
*Նրա գլխում միտք է ծագում,*
*Վեր է առնում պահարանից*
*Նա հօր գլխարկն ու վերարկուն։*

3

*Շուցման Կնիտշը նայում է լուռ,*
*Մոտենում է Ֆրիցը դեմից.*
*Ի՞նչ հսկել սրան, սա անվտանգ*
*Պրոֆեսոր է անզոր ու հին։*

4

*Բայց շուցմանին ջուրը տանի,*
*Ճարպիկ Ֆրիցը իր գործն արեց.*
*Պինդ կպել է պատի վրա*
*Էդ պլակատը խոշոր ու մեծ.*








ԳԻՆՆ Է 20 ԿՈՊ.

*Գրառեպվար № 406 (բ.)*   *Պետհրատի չերկրորդ տպարան Յերևանում պ. 509*